## Իզմիրի ողողումները

Իզմիրէն տրուած հեռագրի մը համաձայն, անցեալ շաբաթ օրուընէ ի վեր տեղացող յորդառատ անձրեւները, մեծ վնասներ պատճառած են քաղաքին մէջ։ Ամբողջ քաղաքը ջուրերու մէջ է։ Գլխաւոր պողոտաներն ու փողոցները վերածուած են հեղեղի, քարափները ողողուած են։

Հարիւրաւոր տուներ փլած են եւ ուրիշներ ալ ծանրօրէն վտանգուած։ Ցարդ 90 դիակներ հաւաքուեցան։ Զոհերը փրկելու գործը դժուարութիւններու կը հանդիպի։

150 անձեր մնացած բացը, անապաստան։ Խմելու ջուր չկայ եւ ամբողջ քաղաքը մութը մնացած է գիշերը, լուսաւորութեան միջոցներու պակասին հետեւանքով։ Ժողովուրդը կը սկսի հացի պակասէն նեղուիլ։

Քառաշարժ երկաթուղին չի բանիր։ Բազմաթիւ կամուրջներ փլած են։ Նիւթական վնասները 100 միլիոն ֆրանքէն պակաս չեն։

## Խորհ. Միութիւնը իր ծախէ

Պերլինի մէջ տպուած ռուսական թերթ մը «Ռուլ», կը յայտնէ թէ Ռուսիայէն բերուած բազմաթիւ եւ արժէքաւոր գեղարուեստական առարկաներ ծախու հանուած են Պերլինի մէջ խորհրդային կառավարութեան կողմէ։ Ծախու հանուած առարկաներուն մէջ կան նաեւ 15րդ դարու իտալական թանկարժէք գործեր։

Անշուշտ, այս վաճառումն ալ մաս կը կազմէ հնգամեայ ծրագրին... բայց բացառաբար գործ պէտք է ընդունիլ թէ «բռնի աշխատանք»ի արտադրութիւններ չեն որ ծախու հանուած են։

## Թատրոնը գործիք քարոզչութեան

Ռուս լուսաւորութեան գործավարութիւնը որոշեց ձեռնարկել թատրոնի հիմնական բարեկարգութեան, որպէսզի ան դառնայ «երկրին մէջ իրագործուող յեղափոխութեան հզօր զէնքը»։ Թատրոններու արուեստագիտական եւ գրական խորհուրդներուն պիտի մասնակցին գործաւորները։ Խաղացանկերը պիտի ուսումնասիրուին ուշադրութեամբ եւ պիտի ընդունուին միայն այն կտորները, որոնք «երեւան կը բերեն պետութեան ընկերվարական շինարարութեան նուաճումներն ու մտահոգութիւնները»։ Բոլոր թատրոնները ամէն օր, երկու ներկայացում պիտի տան։ Գործավարութիւնը կը մտածէ նաեւ ջնջել հեղինակի իրաւունքները, անոնց տեղ հաստատելով թոշակներ։

Այն հեղինակները, որոնց գործերը աւելի ընդունելութիւն կը գտնեն, թոշակէն զատ պիտի ստանան նաեւ օրէնքով հաստատած պարգեւներ։



### ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐԸ ՄԱՐՍԻԼԻՈՅ ՄԷՋ

կը տօնուի նախաձեռնութեամբ Զ. Ե. Ռ. ՄԻՈՒԹԵԱՆ
վաղը կիրակի օր, ճոխ յայտագիրով

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

վասպուրականի Հայր. միութեան կողմէ այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 84 Rue Chape, Սալօն Շափի մէջ։
կը ներկայացուի ղեկավարութեամբ դերասան ՄԱՐՈՒԹԵԱՆԻ
ՊԱՂՏԱՍԱՐ ԱՂԲԱՐԸ (Յ. Պարոնեանի)
Տոմսերու գիներ՝ 10, 7 եւ 5 ֆրանք

### ՍԳԱՀԱՆԴԷՍ ՇԱՍԻ ՄԷՋ ՀԱՃՆՈՅ ԱՆԿՄԱՆ 10ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ

Հաճնոյ Հայր. Միութեան կողմէ վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Սալ տը Ֆէթի մէջ։
կը խօսի՝ Վ. ԶՈՒԼԼԷՐԵԱՆ
Առաւօտուն Խորէն Քհնյ. Կէօքճեան կը պատարագէ ի յիշատակ նահատակներու Մ. Օհաննէսեանի բնակարանին մէջ։

### ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած Ատաբազարի Հայր. միութեան կողմէ
Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ
Société des Ingénieurs Civilsի սրահը
19 Rue Blanche, Métro Trinité կամ Blanche
կը նախագահէ՝ ՏՕՔԹ. Մ. ՏԻՄԻՃԵԱՆ (Նորայր)
Գեղարուեստական ճոխ բաժին եւ անակնկալներ
կը ներկայացուին՝ ՉԱՐԼՍԹՕՆ ԿԱՄ ՍԱՄԱԹԻԱՅԻ ԱԲԻԿ ԱՂԱՆ
եւ ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐԸ
կը նուագէ անցեալ տարուան LUNA PARKի նշանաւոր orchestre
ճոխ պիւֆէ դիւրամատչելի գիներով
Տոմսակի գինն է՝ 7.50 ֆրանք



### Հ. Յ. Դ.

**Փ Ա Ր Ի Զ**

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ խումբի ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին։ Կարեւոր օրակարգ։ Ներկաներու թիւը մեծամասնութիւն կը համարուի։

ՊԻՅԵԱՆՔՈՒՐԻ Կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Շավիլի Արդութեան խումբի բոլոր ընկերներն ու ընկերուհիները այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Կաու Մոնփառնասի դէմի սրճարանը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՊԻՅԵԱՆՔՈՒՐԻ Զաւարեան կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Վռամեան խումբի բոլոր ընկերները վաղը Կիրակի առաւօտ ժամը 9.30ին ծանօթ հաւաքատեղին։ Օրակարգ՝ գեկոյց նոր վարչութեան ընտրութիւն եւ ընթացիկ հարցեր։ Պարտաւորիչ ներկայութիւն։

ԻՍԻ-ԼԷ-ՄՈՒԼԻՆՈՅԻ Մշոյի խումբը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8ին ընկեր Լորիս Պօլոյեանի բնակարանը։ Բացականները նկատի կ'առնուին։

### ՄԱՐՍԻԼԱՀԱՅԵՐՈՒ ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

ԾԱԽՈՒ ԵՆ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

1.— Սէն Մարսէլի մէջ, 1500 քռ. մեթր հող, տափարակ եւ պտղատու ծառերով։

2.— Սէն Մարկրիտի մէջ, 3000 քռ. մեթր հող, նոյնպէս տափարակ եւ պտղատու ծառերով։

3.— Լէ զ'Օլիվի մէջ, 900 քռ. մեթր հող, որուն վրան կը գտնուի 12×12 մեթր քարաշէն եւ caveի վրայ շինուած շէնք մը որուն առաջին յարկը կարելի է վերածել 12 սենեակներու։

4.— Սէն Թ'Անթուանի մէջ, քարաշէնտուն մը, 15 փեէս 2 խանութով, պարտէզ։ Ամբողջովին պարապ։ Դիմել՝ Պ. Պ. Լուտվիկ Տիարպէքիրեանի կամ Մելքոն Մելքոնեանի։ Bar des Lions, Marseille.



### ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան Սէն Միշէլի, Պէլվիլի, Պիյեանքուրի, Անիէրի մասնաճիւղերուն ներկայացուցչական ժողովը միութեան կեդրոնին մէջ 17 Ave. Philippe Auguste, այս երկուշաբթի ժամը 9ին։ Կարեւոր հարցեր։

ՏԷՍԻՆԻ Զմիւռնիոյ Նահանգային հայր. միութեան ընդհ. ժողովը վաղը կիրակի ժամը 2ին S. L. S. A.ի ճաշասրահին մէջ։ կը հրաւիրուին երկսեռ անդամ ու ոչ անդամ հայրենակիցները։ կարեւոր օրակարգ։ Հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն, Ուշագցինները կրնան մասնակցիլ այս ժողովին։



### ԿԱՎՌՕՇԻ 1931Ի ՏԱՐԵԳԻՐՔԸ

Լոյս կը տեսնէ
ՆՈՅԵՄԲԵՐ 1ԻՆ
Գին 30 ֆրանք



IMPRIMERIE - MASSIS - ÉDITION
208bis, Rue Lafayette Paris
Le Gérant H. STEPHAN

Ճէվատ փաշայէ։ Իբրեւ պատուիրակութեան անդամ՝ ժընեւ պիտի մեկնի նաեւ Փարիզի Թուրք դեսպանը Մունիր պէյ։

Ընկլիզիի լաւատեղեակ շրջանակները կը հաւաստեն թէ ժընեւէն յետոյ, Թուրք արտաքին գործավարը պիտի անցնի Իտալիա, յարաբերութեան մտնելու իտալական կառավարութեան եւ բանակցելու համար կարգ մը խնդիրներու մասին, որոնց շատ մեծ կարեւորութիւն կ'ընծայեն քաղաքական շրջանակները։ Պետական մարդոց այս յաջորդական տեսակցութիւնները այն տպաւորութիւնը ձգած են թէ նպատակ կայ քաղաքական նոր խմբակցութիւն մը ստեղծելու Մերձաւոր-Արեւելքի մէջ՝ Իտալիոյ ժամանակցութեամբ։

## Պուխարին կը վտարուի

Պերլին հրատարակուող ռուսական «Ռուլ» թերթը կը գրէ թէ բոլշեւիկեան բարձր շրջանակները վճռած են Պուխարինը արտաքսել երկրէն։ Իբր թէ խորհրդային կառավարութիւնը բանակցութիւններ կը վարէ զայն ղրկելու համար Գերմանիա, Իտալիա կամ Հարաւային Ամերիկա։

Բոլշեւիկեան «Թաս» գործակալութիւնը կը հաղորդէ թէ Նիքոլա Ժանսօն նշանակուած է գործավարներու խորհուրդին փոխ-նախագահ, պահելով մէկտեղ ղատական գործավարի իր պաշտօնը։ Ժանսօն անցած է Լըկովայի տեղը, որ նշանակուած է ձուկի Թրըսթին վարիչ Ֆրումքինի տեղ։ Այս փոփոխութիւնները կապուած են աջակողմեան ղեկավարներու դէմ մղուած պայքարին։

## Պուլկարեւիտալական զինակցութիւն

Զաղրէպի «Նովոստի» թերթը որ Պուլկարիոյ մասին ամենէն ստոյգ տեղեկութիւնները քաղելու համբաւն ունի, կը գրէ թէ Իտալիոյ եւ Պուլկարիոյ միջեւ զինուորական գաղտնի դաշնագիր մը կնքուած է։ Ստոյգ լուրերու համաձայն կը գրէ թերթը, Իտալիոյ պուլկար դեսպանը զօր. Վոլքոֆ Հռոմի մէջ բանակցութիւններ կատարեց՝ մէկ կողմէն յաջողցնելու համար Պորիս Թագաւորին եւ Ճիովաննա իշխանուհիին ամուսնութիւնը, միւս կողմէ՝ հող պատրաստելու համար զինակցութեան մը։ Իբր թէ զօր. Վոլքոֆ, հազիւ Սոֆիա հասած, յարաբերութեան մտած է՝ անձերու հետ, որոնք Պորիս Թագաւորին համաձայնութեամբ, կ'ուզեն դիկտատուրա հաստատել։ Պուլկարիա, նոյնպէս Իտալիոյ հետ կնքած է առեւտրական համաձայնութիւն մը, որով պուլկարական ցորենը մեծ սպառում պիտի գտնէ իտալական շուկային մէջ։

Ընդդիմադիր շրջանակները չեն ծածկեր իրենց մտահոգութիւնը հանդէպ պուլկար քաղաքականութեան նոր ուղղութեան, որ կը ձգտի երկրին մէջ ֆաշիզմ հաստատել եւ Պուլկարիան միացնել Թուրք-Յոյն-Հունգար խմբակցութեան մը ընդդէմ Փոքր-Համաձայնութեան։

Պուլկար զինուորական թերթի մը տեղեկութիւնները կուգան ուժ տալ «Նովոստի» յայտնութիւններուն։ Այս թերթը չի ծածկեր թէ հակառակ Նէօյիի դաշնագրին, Պուլկարիա ներկայիս ունի բանակ մը, որուն թիւը կը հասնի նախապատերազմեան բանակի թիւին։

## Ամերիկայի ընտրութիւնները

ՆԻՒ-ԵՈՐՔ, 5 Նոյտ.— Խորհրդարանական ընտրութիւններու արդիւնքը երէկ կէս գիշերին յայտնի եղաւ հետեւեալ կերպով։ Ընտրուած են 201 հանրապետականներ, 203 ռամկավարներ, 1 աշխատաւորականներ։ 30 ընտրութիւններու արդիւնքը տակաւին չէ ստուգուած։

Արդէն ռամկավարները շահած են 41 աթոռ։ Գալով Ծերակոյտին, հաւանական է որ երկու կուսակցութիւնները զիրար հաւասարակշռեն, իւրաքանչիւրը 48 ձայնով։

Ստացուած արդիւնքը թոյլ կուտայ ենթադրելու թէ Ծերակոյտին մէջ՝ կացութիւնը չպիտի փոխուի ինպաստ արդի վարչութեան, քանի որ ռամկավարները քանի մը աթոռ աւելի շահած ըլլալով, աւելի սաստկութեամբ պիտի շարժին կառավարութեան դէմ։



## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

Փիւժիի մէջ Վռամեան խումբի կողմէ
Հովանաւորութեամբ Նիսի Շրջանային կոմիտէի
Տեղի կ'ունենայ այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին
Պրասըրի Սանթրալի սրահը
կը նախագահէ Ընկեր Վ. ՇԷՀՐԻՐԵԱՆ
կը խօսին՝ ընկերներ ԱԲՕԵԱՆ եւ ԹՈՒՐԻԿԵԱՆ
Երգ, նուագ, արտասանութիւն եւ կենդանի պատկերներ

**ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ, 71 AVE. KLÉBER**

Այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 9—11.30, Café Voltaire, Place Odeon՝ կը խօսի՝ Մկրտիչ Պարսամեան, Ռուբէն Զարդարեանի «Արձակ էջեր եւ ճեքեաթներ» գիրքի մասին։



Հ. Մ. Ը. Մ-ի Պոլսա-Քոլոնպի մասնաճիւղի երեկոյթ պարահանդէսը տեղի կ'ունենայ Յունուար 3ին՝ բոլոր միութիւններէն կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը։

## Հ. Յ. Դ.

**ՓԱՐԻԶ**

ԻԹԱԼԻԻ «Աղբիւր Սերոբ» խումբի ժողովը, վաղը Շաբաթ գիշեր ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Ներկայ կ'ըլլայ կոմիտէի ներկայացուցիչը։ Բացակայ ընկերները պատասխանատուութեան կ'ենթարկուին։

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները վաղը Շբթ. իրիկուն ժամը 8ու կէսին, ընկ. Լեւոն Զօրմիսեանի բնակարանը։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԱՆԻԷՌ-Պոլս Քոլոնպի Զէյթուն կոմիտէն կարեւոր խորհրդակցութեան մը համար ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ հետեւեալ խումբերը։

Փոթօրիկ՝ այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Եռագոյն՝ վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Եռագոյն, Վիշապեան եւ Փոթորիկ խումբերը Թէյասեղանի կը հրաւիրուին այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին Café Comédieի մէջ։ ժողովականները տեղի կ'ունենան Ave. Argenteuil եւ Rue Villebois Mareuil փողոցները իրար խաչաձեւող անկիւնի սրճարանը Place Bourguignonի մօտ։

ՊԻՑԵԱՆՔՈՒՐԻ Զաւարեան կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Վռամեան, Մչօ, Մուրատ եւ Արդութեան խումբերու բոլոր ընկերներն ու ընկերուհիները այս երկուշաբթի ժամը 2.30ին 186 Ave. Verdun, խսի լէ Մուլինօ։ Պարտաւորիչ ներկայութիւն։
ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատ. միութեան ընդհ. ժողովը այս կիրակի ժամը 2.30ին, Գրադարանին մէջ։ կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն՝ ներկայանալ անդամատետրով։

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանի սրահին մէջ՝ կարեւոր օրակարգ՝ Պարտաւորիչ ներկայութիւն։

ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆԻ (Մարսէյլ) ընկեր Կարօ խումբի ժողովը այս կիրակի իրիկուն ժամը 5ին ընկեր Յովհաննէս Վարոսեանի բնակարանը։ Օրակարգ՝ զեկոյց պատգամաւորի, վարչութեան ընտրութիւն եւայլն։

EMPIRE մեծ կինօ՝ 37 Av. Wagram

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՍԻՓԱՆ երգչախումբին անդամները կը հրաւիրուին փորձի Ուրբաթ իրիկուն ժամը 9ին պատուիրակութեան շէնքը (71 Ave. Kléber)։

ՈՒՐՖԱՅԻ Հայր. միութեան ժողովը այս իրիկուն ժամը 8.30ին Քաֆէ Սուրսի մէջ՝ մէթրօ Օտէօն։

ՏԷՍԻՆԻ Բարձր Հայքի հայրենակցական միութեան ժողովը այս կիրակի ժամը 2.30ին Քաֆէ տը Լա Փէի սրճարանը։ կարեւոր օրակարգ՝ կը հրաւիրուին անդամ եւ ոչ անդամ հայրենակիցները,

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

**ՍՏԱՑԱՆՔ**

Ֆրանքֆուրթ, Խաթ.— 400,
Թէթովօ, Գասպ.— 100:
Աղեքսանդրիա, Գ.Փ.— 2 անգլ.,
Մոնմարանսի, Ա. Զ.— 82:
Լիոն, Մ. Ռ.— 70,
Տէսին, Յ. Պ.— 35,
Փըթիթ Իվրի, Խ. Պ.— 35:
Ֆրանքֆուրթ, Խ. Վ.— 50,
Պէյրութ, Գործ.— 1000:
Լիվրի Կարկան, Ս. Ա.— 100,
Լիոն, Վ. Ե.— 35:
Նանթ, Գ. Ս.— 35:
Վիէն, Գ. Պ.— 140,
Տրակինեան, Մ. Ս.— 35:
Սէն Մորիս, Վ. Տ.— 70.40,




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

պատերազմի նախապատրաստութեամբ, բարոյական մթնոլորտ մըն ալ կը ստեղծուի, մինչ Խորհրդային Միութիւնը կ'ուզէ խաղաղութեան մէջ ապրիլ:

Քաշէն իր ճառը վերջացուց Ռուսիոյ մասին սովորական գովեստներով:

## Անհնազանդ բոլշեւիկներ

Արտասահմանի բոլշեւիկեան դասալիք պաշտօնատարներուն վրայ, հատ մը եւս աւելցաւ, Տուպրովսկի հանքածխային ճարտարարուեստի մէջ հեղինակութիւն մը, որ Խորհրդային Առեւտրական Սենեակին Եւրոպայի ներկայացուցիչն էր: Այս անձն էր որ կը կազմակերպէր Խորհ. Միութեան արտասահմանի ցուցահանդէսները եւ դեռ վերջերս, Պորտոյի մէջ գլուխ հաներ էր խորհրդային արտադրութեանց ցուցահանդէս մը, ու Եւրոպայի ուրիշ կարգ մը քաղաքներու համար կը պատրաստէր նոր ցուցահանդէսներ:

Ռուսական «Վերջին Լուրեր» թերթը որ այս լուրը կուտայ, կը հրատարակէ նաեւ Տուպրովսկիի կողմէ Փարիզի խորհրդային առեւտրական ներկայացուցիչին ղրկուած մէկ նամակը, որով իր հրաժարականը կուտայ: Տուպրովսկի կը յայտնէ թէ պարկեշտ մարդու մը աշխատակցութիւնը անհնար բան է խորհրդային կառավարութեան հետ, որուն յիմար ձեռնարկներու քաղաքականութիւնը կը տանի դէպի տնտեսական ու քաղաքական փլուզում: Տուպրովսկի հրաւէր կը կարդայ իր պաշտօնակիցներուն՝ հետեւելու իր օրինակին:

## Օտարականներուն դէմ

Վերջերս. Ֆրանսայի մէջ երեւան հանուած կարգ մը յեղափոխական գաղտնի կազմակերպութիւններ մտահոգած են իշխանութիւնները: Այս առթիւ պատասխանատու բարձր պաշտօնատար մը կը յայտնէ.— Ֆրանսայի համբերութիւնը սպառած է եւ չի կրնար աւելի հանդուրժել որ օտարականներ շարունակեն մեր երկրին մէջ իրենց քաղաքական կերակուրները եփել մեր կրակով:

Խիստ միջոցներ ձեռք պիտի առնուին եւ պիտի հետապնդուին բոլոր կասկածելի օտարականները: Ներքին Նախարարութեան ընդհ. քարտուղար եւ ընդհ. ապահովութեան պետը Պ. Ռոքէր ուսումնասիրելու վրայ է մաքրագործման լայն ծրագիր մը, որ շատ կարճ ատենէն գործադրութեան պիտի դրուի: Ծայրայեղ խստութեամբ, ոստիկանութիւնը խուզարկութիւններ պիտի կատարէ եւ բացառիկ միջոցներ ձեռք պիտի առնուին ընդդէմ այն օտարականներուն, որոնց բնակութիւնը անբաղձալի է եւ որոնք որոշ դիրքի տէր չեն:

Միւս կողմէ, ընդհ. դատախազ Պ. Տօնա-կիկ հրահանգներ տուած է բոլոր դատախազներուն եւ անոնց օգնականներուն որպէսզի, օտարականներու դէմ տրուած վճիռներու վիճակագրութիւնը կազմեն օրը օրին:

Վիճակագրութեան մէջ պիտի նշանակուին դատապարտեալ օտարականին ազգութիւնը, դատապարտեալներուն գումարը եւ դատապարտութեան պատճառները:

Այս վիճակագրութիւնները պիտի հաւաքուին եւ պիտի համադրուին, գիտնալու համար թէ օտարականները ի՞նչ չափով ոճիր կը գործեն երկրին մէջ եւ այս եզրակացութեան հիման վրայ, պիտի մտածուի թէ ի՞նչ միջոցներով կարելի պիտի ըլլայ առաջքն առնել կացութեան:



Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ
Փիւժէի մէջ Վռամեան խումբի կողմէ
Հովանաւորութեամբ Նիսի Շրջանային կոմիտէի
Տեղի կ'ունենայ վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին
Պրասըրի Սանթրալի սրահը
կը նախագահէ Ընկեր Վ. ՇԷՀՐԻՐԵԱՆ
կը խօսին՝ ընկերներ ԱԲՕԵԱՆ եւ ԹՈՒՐԻԿԵԱՆ
Երգ, նուագ, արտասանութիւն եւ կենդանի պատկերներ

ՊՈԼՍ ՔՈԼՕՆՊԻ ՃԷՅԹՈՒՆ ԿՈՄԻՏԷԻ ԹԷՅԱՍԵՂԱՆԸ
ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է



Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ «Աղբիւր Սերոբ» խումբի ժողովը, այսօր Շաբաթ գիշեր ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Ներկայ կ'ըլլայ կոմիտէի ներկայացուցիչը: Բացակայ ընկերները պատասխանատուութեան կ'ենթարկուին:

ԱԼՖՕՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այսօր Շաբթ. իրիկուն ժամը 8ուկէսին, ընկ. Լեւոն Զորմիսեանի բնակարանը: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԱՆԻԷՌԻ-Պուա Քոլոմպի Զէյթուն կոմիտէն կարեւոր խորհրդակցութեան մը համար ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Եռագոյն խումբը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, Ave. Argenteuil եւ Rue Villebois Mareuil փողոցները իրար խաչաձեւող անկիւնի սրճարանը Place Bourguignonի մօտ:

ՊԻՅԵԱՆՔՈՒՐԻ Ջաւարեան կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ վռամեան, Մչօ, Մուրատ եւ Արդութեան խումբերու բոլոր ընկերներն ու ընկերուհիները այս երկուշաբթի ժամը 2.30ին 186 Ave. Verdun, Իսի լէ Մուլինօ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Հ. Յ. Դ. Պատ. միութեան ընդհ. ժողովը վաղը կիրակի ժամը 2.30ին, Գրադարանին մէջ: կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն, ներկայանալ անդամատետրով.

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը այս երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Դրադարանի սրահին մէջ: կարեւոր օրակարգ, Պարտաւորիչ ներկայութիւն:

ՍԷՆԹ ԱՆԹՈՒԱՆԻ (Մարսէյլ) ընկեր կարօ խումբի ժողովը վաղը կիրակի իրիկուն ժամը 5ին ընկեր Յովհաննէս վարոեանի բնակարանը: Օրակարգ՝ զեկոյց պատգամաւորի, վարչութեան ընտրութիւն եւայլն.

ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՏԷՍԻՆԻ Բարձր Հայքի հայրենակցական միութեան ժողովը այս կիրակի ժամը 2.30ին Քաֆէ տը Լա Փէի սրճարանը: կարեւոր օրակարգ, կը հրաւիրուին անդամ եւ ոչ անդամ հայրենակիցները,

ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Փիւժէ սիւր Արժան, Կ. Մ.—50:
Մարսէյլ, Գործ.— 955:
Վալանս, Գործ.— 555:
Փէհլէվի, Ա. Ծ.— 200:
Ռուան, Գործ.— 156.40:
Պորճ-պու-Արարիճ, Ա. եղբ.— 280 Ֆր.:
Տրիպոլիս, Գ. Ա.— 100:
Կրընոպլը, Վ. Մ.— 35:
Փոն տ'Օպնա, Մ. Թ.— 35:
Վիէն, Ս. Ե.— 35:
Սէն Թ'Էթիէն, Խ. Մ.— 35:
Ռոման, Ս. Պ.— 99:
Փուաթիէ, Շ. Մ.— 35:
Ըրնոնքուռ, Ս. Բ.— 35:
Պաղտատ, գործ.— 1 անգ. 8 շիլ.:
Փարիզ, Ե. Պ.— 35:

ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Եղիա եւ Աննա Յակոբեան կը փնտռեն իրենց անբաձագները՝ (Վէզիր Քէօփրիւցի) Օհաննէս, Հրանտ, Արշամ Թաշճեան եւ իրենց քոյրը Սաթենիկ: 2 տարի առաջ կը գտնուէին Փարիզ: 7 ամիսէ ի վեր տեղեկութիւն չկայ իրենց մասին: Իմացնել Աննա Յակոբեանի, Cité 2 Cuprotextil. 5ième Maison No. 133 Roanne, (Loire).

— Շատախ գաւառի Կաճէտ գիւղացի Տիգրան Շամեան (Կաբասետ Շամու տնից) կը փնտռէ իր հօրեղբայրը՝ Մուրատ, որ կը գտնուի Ամերիկա: Կը փնտռուի նաեւ իր ազգականները, որոնց մասին երկար ժամանակ է լուր չունի: Իմացնել «Յառաջ»ի գործակալ Պ. Տեռունեանի, Pehlevi, Perse (Via U. R. S. S.).

— Սեբաստիոյ Տէրինտէ գիւղացի Ալիքսան Ալիքսանեան կը փնտռէ իր մօրաքրոջ որդիները Գէորգ եւ Սողոմոն Չօլաքեանները: 1915ի տեղահանութեան ժամանակ ղրկուած են Մուսուլ, Մալաթիոյ ճանապարհով: Կը կարծուի թէ այժմ կը գտնուին այդ շրջանները: Առաջին անգամ լուր տուողին 1000 ֆր. նուէր իւրաքանչիւր անձի համար: Իմացնել Ա. Ալիքսանեանի, 19 Rue de la Tuilerie, Quai Pagot, Vienne, Isère, France.



ԳԻՆ՝ 30 ՖՐԱՆՔ

ՊԱՏԻ ՕՐԱՑՈՅՑ

Մամուլի տակ է եւ շուտով լոյս կը տեսնէ Բալուի եւ Ցարգիւղերու Օգն. Մարմնոյ 1931ի պատի օրացոյցը՝ զարդարուած Րաֆֆիի, Նալպանտեանի, Անդրանիկի եւն. նկարներով:

Ամէն հայ ընտանիք թող փութայ հատ մը գնել:



EMPIRE Մեւզիք-Հոլ՝ 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

Le Gérant H STEPHAN

կար զինակցութեան մը լուրին վրայ, զոր հոս կընկատեն քըմայական, կրնանք վեր առնել կարգ մը անճշտութիւններ, Պուլկարիոյ զինուորական կազմակերպութեան վրայ: Իբր թէ այս կէտին մէջ Պուլկարիա դրժած է Նէօյեիի դաշնագրին տրամադրութիւնները: Յայտնի է թէ պուլկար բանակը ներկայիս կազմուած է համաձայն այդ դաշնագրին, որ Պուլկարիոյ իրաւունք կուտայ պահելու 30,000նոց բանակ մը եւ 3000 սահմանապահ զինուոր, եւ ոչ թէ 13,000ի ուժ մը, ինչպէս կը գրէ սերպ թերթը:

«Էօվր»ի թղթակիցը տալէ յետոյ կարգ մը մանրամասնութիւններ պուլկար բանակի արդի վիճակի մասին, կը վերջացնէ հետեւեալ կերպով.— Պուլկարիա, անշուշտ կը փափաքի իր փոքր բանակը պահել նուազ ծախքով. բայց ան երբեք չէ պահանջած որ իր բանակին թիւը շատնայ: Եւ եթէ պահանջեր իսկ, ոչ ոք պիտի կրնար զայն մեղադրել: Ուժեղ կերպով զինուած դրացիներու մէջտեղը եւ զինաթափ, անոր պաշտպանութիւնը ապահովուած չէ: 1925ի յունական յարձակումը ցոյց տուաւ արդէն:

## Իտալեւպուլկար յարաբերութիւնները

Պուլկար հեռագրական գործակալութիւնը պաշտօնապէս կը հերքէ թէ կարգ մը թերթերու մէջ երեւցած լուրերը իտալ եւպուլկար զինուորական դաշնակցութեան մը մասին, յերիւրածոյ են:

## Աւստրիոյ ընտրութիւնները

Աւստր. ազգ. խորհուրդի ընտրութիւնները Վիեննայի եւ գլխաւոր քաղաքներուն մէջ տեղի ունեցան հանդարտութեամբ եւ առանց որեւէ միջադէպի:

Վիեննայի մէջ, արձանագրուած քուէարկուներէն 90 առ հարիւրը մասնակցեցան քուէարկութեան:

Քուէարկութեանց ստուգումը տուած է հետեւեալ արդիւնքը, ընկերային-քրիստոնեաներ եւ Հայմվէրէններ միացած 66, ընկերվարականներ՝ 72. իսկ մեկուսացած ազգայնականներ 8, Շոպէրեաններ 19:

Ընտրուած են ուրեմն 165 ներկայացուցիչներ. ընտրուածներու այս թիւին վրայ, կուսակցութեանց կացութիւնը նշանակելի փոփոխութիւն մը չէ կրած: Այս կատարուած ընտրութիւնները պարտութիւն կը նշանակեն Հայմվէր կազմակերպութեան համար:

Քաղաքական շրջանակները զանազան մեկնութիւններ կուտան ընտրութեանց արդիւնքին եւ կը կարծեն թէ Ազգ. Խորհուրդի ներկայ վիճակով, կառավարութիւնը դժուար թէ կարենայ մեծամասնութիւն մը ունենալ եւ հետեւաբար պարտաւոր պիտի ըլլայ հրաժարելու:

Աւստրիոյ քաղաքական կացութիւնը աւելի շփոթ և սպառնալի կը դառնայ մանաւանդ իշխան Շթարընպէրկի այն յայտարարութեամբ թէ,ինչ որ ալ ըլլայ ընտրութեանց արդիւնքը, չպիտի լքէ իշխանութիւնը:

## Խորհրդային Ռուսիոյ մէջ

Կառավարական հրամանով 13 տարին լրացուցած բոլոր պատանիները պարտադիր կերպով պիտի մասնակցին Հոկտեմբերեան յեղափոխութեան տարեդարձին առթիւ կազմակերպուելիք հանդէսներուն եւ թափօրներուն:

⁂ Դեկտեմ. 20ին կը լրանայ 1905ի յեղափոխութեան քսանեւհինգամեակը: Խորհրդային կառավարութիւնը որոշեց տարեդարձը տօնել մեծ հանդիսութեամբ:

⁂ Վարշաւիայէն տրուած լուրի մը համաձայն, խորհրդային պաշտօնեաներու դասալքումը կը շարունակուի ո՛չ միայն արտասահմանի մէջ, այլ եւ Խորհրդ. Միութեան սահմաններէն ներս: Այսպէս, Կոլտվա. Փոտոլիոյ Խորհուրդին նախագահը անհետացաւ, ձգելով սակայն նամակ մը, որով կը յայտնէ թէ ամէն կապ կը խզէ Խորհուրդներուն հետ եւ կ'անցնի հակառակորդ բանակին մէջ:

## Անգլեւհնդիկ Խորհրդաժողովը

Անգլեւհնդիկ Խորհրդաժողովը որ պիտի վճռէ Հնդկաստանի քաղաքական կազմին մասին, կը բացուի վաղը, չորեքշաբթի, Լոնտոնի մէջ: Բացումը պիտի կատարէ Անգլիոյ թագաւորը որ այս առթիւ պիտի խօսի կարեւոր ճառ մը: Խորհրդաժողովին բուն աշխատանքները պիտի սկսին նոյեմբեր 17ին: Հնդիկ պատգամաւորները որոնք կը ներկայացնեն 350 միլիոն ժողովուրդ, 89 հոգի են: Խորհրդաժողովը պիտի փորձէ Հնդկաստանի համար մշակել ներկայացուցչական ծրագիր մը: Երկու գլխաւոր առաջարկներ վէճի եւ խորհրդածութեան պիտի դրուին: Սիմոնի տեղեկագիրը եւ եւ Հնդկաստանի փոխարքային: Նկատի պիտի առնուին նաեւ հնդիկ պատգամաւորներու առաջարկները:

## Եգիպտոսի դէպքերը

Գահիրէի մէջ. նշանակելի միջադէպեր տեղի կ'ունենան:

Ուսանողները փորձեցին կրակի տալ Արհեստից վարժարանը: Ոստիկանութիւնը կրակ բացաւ անոնց վրայ եւ վիրաւորեց երկու ուսանողներ:

Վարչապետ Սըտքը փաշա երկար տեսակցութիւն մը ունեցաւ ընդհ. ապահովութեան պետին հետ, կարգապահական անհրաժեշտ միջոցներ ձեռք առնելու համար:

Զօրախումբեր եւ ոստիկանական ջոկատներ կը շարունակեն գրաւել քաղքին ռազմագիտական կէտերը:

Կրթական նախարարը հրաժարեցուց դպրոցի հինգ տնօրէններ, որոնք մասնակցած էին վերջին խռովութիւններուն:



**Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ** Երրորդ պատգամաւորական ժողովի վերջին նիստը տեղի կ'ունենայ այսօր կէսօրէ վերջ ժամը 2ին 71 Ave Kléber: Բոլոր գործօն եւ օժանդակ անդամները կրնան մասնակցիլ այս ժողովին:

### Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատանեկան միութեան ընդհ. ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին Գրադարանի սրահը, Կարեւոր օրակարգ:

Հ. Մ. Ը. Մ.ի ֆութպօլի յանձնախումբը: շնորհակալութեամբ ստացած է Փարիզի Հայ Տիկնանց միութեան Կարմիր Խաչի օգն. մասնաճիւղէն, երկու շրջուն դեղարանի ամբողջական կազմած, իր Ա. եւ պահեստի խումբերուն համար:

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Յակոբ Պուլտուքեանի մահուան առթիւ մեր ցաւակցութիւնը կը յայտնենք իր հայրենակիցներուն եւ պարագաներուն:

Եոզկատի եւ շրջ. ընդհ. հայր. միութեան վիէնի մասնաճիւղ

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Եղիա եւ Աննա Յակոբեան կը փնտռեն իրենց անհրաժեշտները՝ (Վէզիր Քէօփրիւցի) Օհաննէս, Հրանտ, Արշամ Թաշճեան եւ իրենց քոյրը Սաթենիկ: 2 տարի առաջ կը գտնուէին Փարիզ: 7 ամիսէ ի վեր տեղեկութիւն չկայ իրենց մասին: Իմացնել Աննա Յակոբեանի, Cité 2 Cuprotextil. 5ième Maison No. 133 Roanne, (Loire).

— Շատախ գաւառի Կաճէտ գիւղացի Տիգրան Շամեան (Կարապետ Շամու տնից) կը փընտռէ իր հօրեղբայրը՝ Մուրատ, որ կը գտնուի Ամերիկա: Կը փնտռուի նաեւ իր ազգականները, որոնց մասին երկար ժամանակ է լուր չունի: Իմացնել «Յառաջ»ի գործակալ Պ. Ծերունեանի, Pehlevi, Perse (Via U. R. S. S.).

— Սեբաստիոյ Տէրինէ գիւղացի Ալիքսան Ալիքսանեան կը փնտռէ իր մօրաքրոջ որդիները Գէորգ եւ Սողոմոն Չօլաքեանները: 1915ի տեղահանութեան ժամանակ ղրկուած են Մուսուլ, Մալաթիոյ ճանապարհով: Կը կարծուի թէ այժմ կը գտնուին այդ շրջանները: Առաջին անգամ լուր տուողին 1000 ֆր. նուէր իրաքանչիւր անձի համար: Իմացնել Ա. Ալիքսանեանի, 19 Rue de la Tuilerie, Quai Pagot, Vienne, Isère, France.

— Շուշանիկ Քէօրօղլանեան կը փնտռէ Ակնայ Թափուր թաղէն իր հօրեղբօրորդին Խաչատուր Քէօրօղլանեան, հօր անունը՝ Աւետիս, մօր անունը՝ Փամփուլ: 6 տարի առաջ Երուսաղէմի որբանոցէն փոխադրուած է Եգիպտոս: Այժմ 24 տարեկան է: Իմացնել Marie Baldjian, 118 Bld. Belleville. Paris (20). France. Կը խնդրուի Եգիպտահայ թերթերէն արտատպել:




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H STEPHAN






նալ յեղափոխութեան դէմ, որովհետեւ վաղը, երբ կուլակները վերցած ըլլան մէջտեղէն, այս պայքարը ծանրօրէն վտանգուած պիտի ըլլայ։ Ասով է որ կը բացատրուի խափանարար տարրերու տենդոտ գործունէութիւնը։ Անոնց գործնական ծրագիրն էր դժուարութիւններն աւելի սաստկացնել։ Կը յուսային թէ պիտի կրնային ազգային տնտեսութեան տագնապ մը ստեղծել եւ ժողովուրդին մէջ դժգոհութեան բուռն հոսանք մը գրգռել։ Խափանարարները, ներկայացուցիչներն են հողային մեծ կալուածատէրերու եւ խոշոր դրամատէրերու։ Իր խորքին մէջ, «ճարտարարուեստական կուսակցութեան» եւ անոր դաշնակցին «աշխատաւոր գիւղացիական կուսակցութեան» ծրագիրն է։ Այս երկու կուսակցութիւնները կը կռուին հին կարգերու վերահաստատման համար։

«Աշխատաւոր դասակարգը պիտի գիտնայ պէտք եղածին պէս պատժել օտար զինապաշտութեան գործակալները եւ աշխատաւորութեան թշնամիները եւ հակայեղափոխական ուժերու շարժման դէմ, ան պիտի կրկնապատկէ իր արթնութիւնը»։

Այս խօսքերը, անշուշտ իբր ազդարարութիւն Նոր մահապատիժներու։















## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

### ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԴԵԿՏ. 21ԻՆ SALLE GAVEAUԻ ՄԷՋ

ՆԻՍ.— կազմակերպուած Նիսի Շրջ. կոմիտէի կողմէ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 354 Bld. de la Madeleine, Bar Cigalleի ներքնասրահին մէջ։

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ խումբի ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանին մէջ։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատանեկան միութեան ընդհ. ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին Գրադարանի սրահը, Կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8,30ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին վիճաբանական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Տէր Յովհաննէսեան, նիւթ՝ մենք եւ մեր կոչումը։ Մէկ ժամ սինէմա, Վիքթոր Հիւկոյի «Թշուառ»ները։

Հ. Մ. Ը. Մ.ի բոլոր նախկին անդամներն ու համակիրները կը հրաւիրուին խորհրդակցական ժողովի, այս ուրբաթ իրիկուն ժամը 9ին, 131 Rue Fbg. du Temple, Ռոստոմ Գրադարանի սրահը։

ՍԻՓԱՆ երգչախումբի փորձը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 71 Ave. Kléber.

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Յ. Երանեան շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք անձամբ, նամակով, հեռագրով շնորհաւորեցին իրենց ամուսնութիւնը։

Մարսէյլ 11 Նոյեմբեր 1930

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Եղիա եւ Աննա Յակոբեան կը փնտռեն իրենց անհրաժեշտները՝ (Վէզիր Քէօփրիւցի) Օհաննէս, Հրանտ, Արշամ Թաշճեան եւ իրենց քոյրը Սաթենիկ։ 2 տարի առաջ կը գտնուէին Փարիզ։ 7 ամիսէ ի վեր տեղեկութիւն չկայ իրենց մասին։ Իմացնել Աննա Յակոբեանի, Cité 2 Cuprotextil. 5ième Maison No. 133 Roanne, (Loire).

— Շատախ գաւառի Կաճէտ գիւղացի Տիգրան Շամեան (Կարապետ Շամու տնից) կը փնտռէ իր հօրեղբայրը՝ Մուրատ, որ կը գտնուի Ամերիկա։ Կը փնտռուի նաեւ իր ազգականները, որոնց մասին երկար ժամանակ է լուր չունի։ Իմացնել «Յառաջ»ի գործակալ Պ. Ծերունեանի, Pehlevi, Perse (Via U. R. S. S.).

— Կը փնտռուի Խասքալցի Պարոյր Ցամաքեան որ մէկ տարի առաջ կը գտնուէր Մարսէյլ։ Իմացնել՝ Israél Tzamakian 11 rue 26 Octobre, Salonique, Grèce.

— Սեբաստիոյ Տէրինտէ գիւղացի Ալիքսան Ալիքսանեան կը փնտռէ իր մօրաքրոջ որդիները Գէորգ եւ Սողոմոն Զօլաքեանները։ 1915ի տեղահանութեան ժամանակ ղրկուած են Մուսուլ, Մալաթիոյ ճանապարհով։ Կը կարծուի թէ այժմ կը գտնուին այդ շրջանները։ Առաջին անգամ լուր տուողին 1000 ֆր. նուէր իւրաքանչիւր անձի համար։ Իմացնել Ա. Ալիքսանեանի, 19 Rue de la Tuilerie, Quai Pagot, Vienne, Isère, France.

— Շուշանիկ Քէօրօղլանեան կը փնտռէ Ակնայ Թափուր թաղէն իր հօրեղբօրորդին Խաչատուր Քէօրօղլանեան, հօր անունը՝ Աւետիս, մօր անունը՝ Փամփուշ։ 6 տարի առաջ Երուսաղէմի որբանոցէն փոխադրուած է Եգիպտոս։ Այժմ 24 տարեկան է։ Իմացնել Marie Baldjianի, 118 Bld. Belleville. Paris (20). France. Կը խնդրուի Եգիպտահայ թերթերէն արտատպել։









ԳԻՆ՝ 30 ՖՐԱՆՔ





## ՊԱՏԻ ՕՐԱՑՈՅՑ

Մամուլի տակ է եւ շուտով լոյս կը տեսնէ Բալուի եւ Ցարգիւղերու Օգն. Մարմնոյ 1931ի պատի օրացոյցը՝ զարդարուած Րաֆֆիի, Նալպանտեանի, Անդրանիկի եւն. նկարներով։

Ամէն հայ ընտանիք թող փութայ հատ մը գնել։







IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

Ամբաստանագիրը մեղադրանքի բաժին մը եւս կը հանէ Փուանքառէի եւ Պրիանի, սպայակոյտի անդամներու, որոնք կ'ամբաստանէ թէ զինեալ յարձակման յատակագիծը պատրաստած են։ Իբր թէ, ամբաստանեալները պարտաւոր էին ճարտարարուեստի զանազան ճիւղերուն մէջ ստեղծել մեծ տագնապ մը, այս տարուան ընթացքին, իսկ 1930ը ֆրանսական սպայակոյտին կողմէ նշանակուած էր զինեալ միջամտութեան տարի։ Ամբաստանեալները կը կատարէին այս սպայակոյտին կողմէ տրուած հրահանգներ՝ լրտեսական գործերու վերաբերեալ։ Անոնք Ռուսիոյ զինուորական ուժերուն մասին տեղեկութիւններ կը քաղէին եւ կը հաղորդէին։

Ատկից զատ, ամբաստանեալները աշխատած են բարոյալքել կարմիր բանակը, ստեղծած են կազմակերպութիւն մը իրենց անդամներէն, որոնք օտար զինուորական ուժերուն պիտի օժանդակէին, օդը հանելով հանրային շէնքեր, ելեկտրական կայաններ, երկաթուղիներ, գործարաններ եւ վերջապէս պիտի գործադրէին ֆրանսական սպայակոյտին հրահանգները։

Ահա ուրեմն կարմիր դատախազի մը կողմէ գրուած ոճիր-արկածային մեծ վէպ մը, որ դժբախտաբար վէպ է սակայն։

## ԳՐԱՏՈՒՆ ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ

51 Rue Mr. le Prince. Paris (6e) Tél. Danton 88-65

Հասած են Րաֆֆիի բոլոր գործերը, Ահարոնեանի «Ազատութեան Ճանապարհին», «Իմ գիրքը» 2 հատոր, Կեանք եւ Արուեստ» տարեգիրք 1931, Ռ. Զարդարեանի «Արձակ էջեր եւ Հէքեաթներ»ը, Օ. Մխիթարեանի «Վանի հերոսամարտը». Կ. Զարեանի «Տարագոմի հարսը», «Վօսփորի Գաղտնիքը», «Վալանթին», «Կէս կոյսեր», «Շրջիկ Մատուռան», Շահնուրի «Նահանջը առանց երգի», «Մտերիմ զրոյցներ», «Երջանկութեան ուղի», Նամականի, ֆրանս. զրուցատրութիւն, բառարաններ (Գանթարեան, Նուպարեան, Լուսինեան, Նորայր), հայերէն դասագրքեր, Օտեանի, Շանթի, Զօհրապի, Իսահակեանի, Թումանեանի, Շիրվանզատէի եւ այլ հին ու նոր հեղինակներու գործերէն ճոխ մթերք մը։

Լոյս տեսաւ Փ. Միքայէլեանի «Եւա», արձակուրդի բացիկներ գիրքը՝ 5 ֆրանք։ Մամուլի տակ է Գ. Մելօյեանի նոր վէպը՝ «Երեք ընկերները»։



## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

### ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԴԵԿՏ. 21ԻՆ SALLE GAVEAUԻ ՄԷՋ

ՆԻՍ.— կազմակերպուած Նիսի Շրջ. կոմիտէի կողմէ Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 354 Bld. de la Madeleine, Bar Cigalleի ներքնասրահին մէջ։

ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ ԱՅՍ ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ ժամը 8.30ին, 14 Ave. d'Italie սրճարանը, մէթրօ իթալի։ Նիւթ՝ Հայաստանի վերջին ապստամբութիւնները եւ երկրորդ արդի Թուրքիան։ Ներկայ կ'ըլլան ընկերներ Ահարոնեան եւ Վարանդեան։ կը հրաւիրուին նաեւ շրջաններու ընկերները։



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ խումբի ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանին մէջ։

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատանեկան միութեան ընդհ. ժողովըայսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին Գրադարանի սրահը։ Կարեւոր օրակարգ։

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ընդհ. ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8,30ին, սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

ՍԷՎ ՇԱՄՈՆԻ ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ տեղւոյս եւ շրջանի բոլոր ընկերները այս կիրակի ժամը 2ին ծանօթ հաւաքատեղին, ներկայանալ անդամատետրով։ Բացակաները պատասխանատուութեան կ'ենթարկուին։

ԼԻՈՆԻ ընդհ. ընկերական վիճաբանական ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին գ. Թաղապետարանի Գրադարանի սրահը։

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէն ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերներն եւ ընկերուհիները այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 63 Րիւ տը լա Րէփիւպլիք։ Կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Բացակաները նկատողութեան պիտի առնուին։

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆ

Հ. Յ. Դ. Լիոնի Շրջ. կոմիտէն Թէյասեղանի կը հրաւիրէ Լիոնի ընկերներն ու համակիրները այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

## ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Café Voltaire, 21 rue d'Odéon: կը խօսին Օհան կարօ, Մկրտիչ Պէշիկթաշլեանի ծննդեան հարիւրամեակին առթիւ։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Շատախ գաւառի Կաճէտ գիւղացի Տիգրան Շամեան (Կարապետ Շամու տնից) կը փնտռէ իր հօրեղբայրը՝ Մուրատ, որ կը գտնուի Ամերիկա։ Կը փնտռուի նաեւ իր ազգականները, որոնց մասին երկար ժամանակ է լուր չունի։ Իմացնել «Յառաջ»ի գործակալ Պ. Ծերունեանի, Pehlevi, Perse (Via U. R. S. S.).

— Կը փնտռուի Խասքալցի Պարոյր Ցամաքեան որ մէկ տարի առաջ կը գտնուէր Մարսէյլ։ Իմացնել՝ Israél Tzamakian 11 rue 26 Octobre, Salonique, Grèce.

— Շուշանիկ Քէօրօղլանեան կը փնտռէ Ակնայ Թափուր Թաղէն իր հօրեղբօրորդին Խաչատուր Քէօրօղլանեան, հօր անուն՝ Աւետիս, մօր անուն՝ Փափուլ։ 6 տարի առաջ Երուսաղէմի որբանոցէն փոխադրուած է Եգիպտոս։ Այժմ 24 տարեկան է։ Իմացնել Marie Baldjianի, 118 Bld. Belleville. Paris (20). France. Կը խնդրուի Եգիպտահայ թերթերէն արտատպել։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան Փարիզի մասնաճիւղին վիճաբանական ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Տէր Յովհաննէսեան, Նիւթ՝ Մենք եւ մեր կոչումը։ Մէկ ժամ սինէմա, Վիքթոր Հիւկոյի «Թշուառ»ները։

Հ. Մ. Ը. Մ.ի բոլոր նախկին անդամներն ու համակիրները կը հրաւիրուին խորհրդակցական ժողովի, վաղը ուրբաթ իրիկուն ժամը 9ին, 131 Rue Fbg. du Temple, Ռոստոմ Գրադարանի սրահը։

ՍԻՓԱՆ երգչախումբի փորձը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 71 Ave. Kléber.

ԱԿՆԱՅ Հայր. Միութեան տարեկան մեծ հացկերոյթը այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին, Ֆլորիա ճաշարանը, 61 Rue Mr. le Prince մէթրօ Օտէոն։ Վարչութիւնը կը խնդրէ փարիզաբնակ բոլոր ակնցիներէն անպատճառ ներկայ ըլլալ։ Տեղի պիտի ունենան Ակնցի բանաստեղծներէ արտասանութիւններ, Ակնայ երգեր եւ Ակնայ պարեր։ Գին հացկերոյթի 18 ֆրանք։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN










Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

ԴԵԿՏ. 21ԻՆ SALLE GAVEAUի ՄԷՋ

ՆԻՍ.— կազմակերպուած Նիսի Շրջ. կոմիտէի կողմէ վաղը իրիկուն ժամը 8.30ին 354 Bld. de la Madeleine, Bar Cigalleի ներքնասրահին մէջ:

ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻ ԴԱՍԱԽՕՍԱԿԱՆ ԺՈՂՈՎԸ ՎԱՂԸ ԻՐԻԿՈՒՆ

ժամը 8.30ին, 14 Ave. d'Italie սրճարանը, մեթրօ Իթալի: Նիւթ՝ Հայաստանի վերջին ապստամբութիւնները եւ երկրորդ արդի Թուրքիան: Ներկայ կ'ըլլան ընկերներ Ահարոնեան եւ Վարանդեան: կը հրաւիրուին նաեւ շրջաններու ընկերները:

ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շավիլի Նալլուխանցի Երիտ. Միութեան կողմէ ի նպաստ Գրադարանի ճոխացման, 29 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ, Salle Harolaի մէջ, 3 Rue la Vieuville, մեթրօ՝ Abbesses եւ Picale.

կը նախագահէ՝ Պ. Դ. ՏԷՐ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, նուագ, արտասանութիւն, մեներգ, հայկական պարեր:

կը ներկայացուի ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐ

Կը նուագէ Լիւնա Փարքի օրքէսթրը: Մուտք՝ կանանց 7.50 ֆրանք, այրերու 10 ֆր.: Տոմսերը կը ծախուին Պէլվիլի մէջ նպարավաճառ Արթինեանի մօտ:

ՀԱՅ ՍՊԱՆԵՐՈՒ ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

կազմակերպուած նախկին պատերազմիկ Հայ Սպաներու միութեան կողմէ: 15 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն ժամը 10էն մինչեւ առաւօտ Salles Goujonի սրահներուն մէջ, 8 Rue Jean Goujon.

Իրենց մասնակցութիւնը պիտի բերեն՝ հռչակաւոր Ռաֆայէլ իր օրքէսթրով (de la Maison Amedienne Russe), տիկիններ Վարիա Լասքա եւ Լալիա Թումայեանց եւ Օր. Ախնաթանեան՝ իրենց երգերով, Թառիստ Ժորժ եւ Պ. Տէր-Աբրահամեան իրենց թառով ու պալալայքայով: Ընտիր ժազ-պանտ եւ մինչեւ լոյս պար: Տոմսի գին՝ 20 ֆր.:

Հ. Մ. Ը. Մ.ի Իթալիի մասնաճիւղի ԵՐԵԿՈՅԹ-ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ Դեկտ. 27ին Շաբաթ գիշեր ժամը 9էն մինչեւ առաւօտ: Բոլոր միութիւններէն կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած Լիոնի Հ. Մ. Ը. Մ.ի վարչութեան կողմէ Վաղը Շբ. իրիկուն ժամը 8.30ին Գ. Թաղապետարանին սրահին մէջ: Բոլոր հայրենակիցներէն կը խնդրուի ներկայ ըլլալ այս հանդէսին, կը խօսին Փարիզէն ժամանած Կեդր. Վարչութեան կողմէ Պ. Գ. Յովհաննէսեան, սկաուտներու պետ Պ. Հ. Աբէլեան եւ աթլէթիք եւ ֆութպոլի խումբերու պետ Պ. Ք. Ժպտուն:

Ֆրանսական «օրքէստր»ի խումբ մը կը նուագէ հայկ. եւ եւրոպ. ընտիր կտորներ: Երգ, արտասանութիւն եւ զաւեշտ «ԵՐԿՈՒ ԱՆՎԱՐՏԻՆԵՐԸ»:

Հ. Յ. Դ.

Փ Ա Ր Ի Զ

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ խումբի ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանին մէջ:

Գ Ա Ւ Ա Ռ

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ընդհ. ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8,30ին, սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:

ՍԷՎ ՇԱՄՈՆԻ ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ տեղւոյս եւ շրջանի բոլոր ընկերները այս կիրակի ժամը 2ին ծանօթ հաւաքատեղին, ներկայանալ անդամատետրով: Բացակաները պատասխանատուութեան կ'ենթարկուին:

ԼԻՈՆԻ ընդհ. ընկերական վիճաբանական ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին գ. Թաղապետարանի Գրադարանի սրահը:

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէն ստիպողաբար ը՛նդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերներն եւ ընկերուհիները վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 63 րիւ տը լա Րէփիւպլիք: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն: Բացակաները նկատողութեան պիտի առնուին:

ԼԻՈՆԻ Ք. Զ. Ա. միացեալ խումբի ժողովը 17 Նոյեմբեր, երեկոյեան ժամը 8.30ին Գրադարանի սրահը: Կարեւոր օրակարգ:

ԼԻՈՆԻ Քեռի եւ Կուկունեան խումբերու ժողովը 20 Նոյեմբեր, երեկոյեան ժամը 8.30ին Գրադարանի սրահը: Կարեւոր օրակարգ:

ՎԱԼԱՆՍԻ Բաբկէն Սիւնի կոմիտէն դասախօսական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերներն ու համակիրները Հ. Յ. Դ. Գրադարանը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին: Նիւթ՝ Ռուս բոլշեւիկները եւ եւրոպան: Կը խօսի՝ ընկ. Գեղամ Սարոյեան:

ՑՈՒՑԱՏԵՍ

ՍԻՓԱՆ երգչախումբի փորձը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 71 Ave. Kléber.

ԱԿՆԱՅ Հայր. Միութեան տարեկան մեծ հացկերոյթը այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին, Ֆլօրիա ճաշարանը, 61 Rue Mr. le Prince մեթրօ Օտէոն: Վարչութիւնը կը խնդրէ փարիզաբնակ բոլոր ակնցիներէն անպատճառ ներկայ ըլլալ: Տեղի պիտի ունենան Ակնցի բանաստեղծներէ արտասանութիւններ, Ակնայ երգեր եւ Ակնայ պարեր: Գին հացկերոյթի 18 ֆրանք:

ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է

Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ ԹԷՅԱՍԵՂԱՆԸ

ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

Այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Café Voltaire, 21 rue d'Odéon: կը խօսին Օհան Կարօ, Մկրտիչ Պէշիկթաշլեանի ծննդեան հարիւրամեակին առթիւ:

ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Յակոբեան ընտանիքը իր շնորհակալութիւնները կը յայտնէն Տէսինի Հ. Յ. Դաշնակցութեան, Հ. Մ. Ը. Մ.ի, Կարմիր Խաչի, Հայր. միութեանց, ազգականներու եւ հայրենակիցներու որոնք անձամբ կամ գրաւոր իրենց ցաւակցութիւնը յայտնեցին ՍԱՐԳԻՍ ՅԱԿՈԲԵԱՆԻ ղառնաղէտ մահուան առթիւ: Տէսին 11 Նոյ. 930


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN














ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Խասքալցի Պարոյր Ցամաքեան որ մէկ տարի առաջ կը գտնուէր Մարսէյլ: Իմացնել՝ Israél Tzamakian 11 rue 26 Octobre, Salonique, Grèce.

— Շուշանիկ Քէօրօղլանեան կը փնտռէ Ակնայ Թափուր թաղէն իր հօրեղբօրորդին Խաչատուր Քէօրօղլանեան, հօր անունը՝ Աւետիս, մօր անունը՝ Փամփուլ: 6 տարի առաջ Երուսաղէմի որբանոցէն փոխադրուած է Եգիպտոս: Այժմ 24 տարեկան է: Իմացնել Marie Baldjianի, 118 Bld. Belleville. Paris (20). France. Կը խնդրուի Եգիպտահայ թերթերէն արտատպել:







ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ

ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆ

Նոր գիրքը

ԲԱՆԱՍՏԵՂԾ ՀՐԱՊԱՐԱԿԱԳԻՐ

Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ (իր գրական գործունէութեան քառասնամեայ յոբելեանի առթիւ) Դիմել՝ M. Loussiguianի, Rue des Cascades, Paris (20). Փոստի ծախք չկայ

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

զինակալուր դէմքեր խորհրդային իշխանութեան մերժէր էին զիրենք դատելու իրաւունքը: Դատավարութիւնն սառեցեր էր քաղաքական բուռն վիճաբանութեան մը բնոյթը, ուր ընկերվարականներն իրենց գլխուն հետ կը խաղային: Բոլորն ալ մահուան դատապարտուեցան. բայց Տրոցկիի խորհուրդով, մահավճռին գործադրութիւնը յետաձգուեցաւ եւ դատապարտեալներուն հաղորդուեցաւ թէ իրր պատանդ պիտի պահուին, և պիտի գնդակահարուին, եթէ ընկերվարականները որ եւ է ձեռնարկ կատարեն բոլշեւիզմի դէմ: Երկարատեւ բանտարկութենէ յետոյ, անոնք աքսորուեցան զանազան վայրեր, ուր չեկիստներու ամենախիստ հսկողութեան տակ, անոնք չկրցան որ եւ է յարաբերութիւն ունենալ իրենց ազատ ընկերներուն հետ:

Հիմա նորէն, անոնք վերադարձած են Չեկայի բանտը, Մոսկուա: Մահուան պատիժը կրկին կը սպառնայ անոնց, որովհետեւ, կարմիր բռնաւորը Ստալին, կը վախնայ բոլոր անոնցմէ, զորս կը նկատէ ընդունակ գլուխն անցնելու հաւանական ըմբոստացումներու:

## Ժընեւի խորհրդ. պատուիրակութեան դէմ

Ժընեւի մէջ զրոյց կը շրջի թէ զինաթափութեան յանձնաժողովին խորհրդ. պատուիրակութեան դէմ դաւադրութիւն մը սարքուած է:

Պատուիրակութեան պետը Լիտվինոֆ ռուսերէն գրուած անստորագիր նամակ մը ստացած է. Նամակը կը յայտնէ թէ դաւադրութիւն մը սարքուելու վրայ է: Այս նամակը Լիտվինոֆի կողմէ յանձնուած է ոստիկանութեան, որ խորհրդ. պատուիրակներու ապահովութեան եւ պաշտպանութեան յատկացուած ուժերը աւելի զօրացուց:

## Պուլկարիոյ արտաքին քաղաքականութիւնը

Ընկերվարական կուսակցութեան կողմէ, պուլկար խորհրդարանին մէջ, հարցում ուղղուեցաւ կառավարութեան թէ Թագաւորին ամուսնութեան հետեւանքով, փոփոխութիւն պիտի կրէ՞ երկրին արտաքին քաղաքականութիւնը: Այս առթիւ յիշուեցաւ թէ Սոֆիայի իտալական դեսպանը ճառ մը խօսած է Պուլկար ֆաշիստներու առջեւ, յայտնելով թէ երկրին փրկութիւնը ֆաշիզմի մէջ է:

Պուլկար վարչապետը նախ հերքեց իտալական դեսպանին վերագրուած ճառը, յետոյ պատասխանելով հարցման, յայտնեց թէ Պուլկարիա կը շարունակէ վարել խաղաղութեան քաղաքականութիւն մը, հիմնուած դաշնագրերու վրայ, եւ թէ ապագային, այդ քաղաքականութիւնը իր նպատակներով թէ միջոցներով, որեւէ փոփոխութիւն չպիտի կրէ:

## Ընդհ. գործադուլ Սպանիոյ մէջ

Մատրիտի Շինութեանց գործաւորները, սէնտիքային կարգադրութեամբ՝ ընդհ. գործադուլ յայտարարեցին: Բանթողները խմբովին ուղղուեցան մայրաքաղաքին կեդրոնը: Կարգապահական խիստ միջոցներ ձեռք առնուած էին ոստիկանութեան կողմէ: Գործաւորներ փոխադրող բազմաթիւ մեծ ինքնաշարժներ կեցուցին բանթողները որոնք արգիլեցին իրենց ընկերները աշխատանքի երթալէ: Ոստիկանութիւնը միջամտեց բայց որեւէ միջադէպ չպատահեցաւ:

Ընդհ. Գործադուլը կատարեալ է: Շինութեանց սէնտիքային մասնակցող 21000 գործաւորներ դադրեցուցած են աշխատանքը: Մետաղագործներն ալ գործադուլ յայտարարած ըլլալով, բանթողներու թիւը Մատրիտի մէջ կը հասնի մօտ 40,000ի:

Համալսարանի ուսանողները ձգեցին դասընթացքները եւ խումբ խումբ, կարուհիներու արհեստանոցներն այցելելով, թելադրեցին որ գործադուլ յայտարարեն:

## Եգիպտոսի կացութիւնը

Համաձայն եգիպտական նախկին սահմանադրական օրէնքին, Խորհրդարանի բացումը պէտք է տեղի ունենար շաբաթ, 16 նոյեմբերին: Այդ օրուան համար ազգայնական Վաֆտ կուսակցութիւնը որոշեց սուգի օր յայտարարել, պահանջելով որ բոլոր բժիշկներէն եւ դեղագործներէն զատ, բոլոր ազատ արհեստաւորները գործադուլ ընեն: Եգիպտացի կիներ, ուրբաթ օր պտտեցան խանութէ խանութ, հրաւիրելով որ փակեն յաջորդ օրը: Քանի մը ձերբակալումներ կատարուեցան:

Շաբաթ օր, կառավարութիւնը ամենախիստ միջոցներ ձեռք առած էր. բայց որ եւ է միջամտութիւն կատարելու պէտք չունեցաւ ոստիկանութիւնը: Գահիրէ հանդարտ օր մը անցուց: Փաստաբանները այդ օր դատ չվարեցին: Արաբական թաղերու մէջ, խանութները փակ էին, բացի սրճարաններէն:

Գաւառներէն համերաշխութիւն եւ համամտութիւն յայտնող բազմաթիւ հեռագիրներ հասան Վաֆտի նախագահութեան: Նահաս փաշա, Վաֆտի նախագահը, ոստիկաններու ընկերակցութեամբ շրջեցաւ Գահիրէի թաղերն ու արուարձանները, ամէն տեղ արժանանալով ժողովուրդին խանդավառ ընդունելութեան:





## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ժողովը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը կարեւոր է:

ԼԻՈՆԻ Քեռի եւ Կուկունեան խումբերու ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը: Կարեւոր օրակարգ:



ԳԻՆ՝ 30 ՖՐԱՆՔ

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը այս հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլորիայի մէջ: Կը խօսի Պ. Եր. Տ. Անդրէասեան. Հայ լեզուին տիրական յատկութիւններուն մասին: Մէկ ժամ սինէմա, Վիքթոր Հիւկոյի «Թշուառներ»ը եւ Չարլի Չէփլին:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մելիք Գէորգեան, Տէր և Տիկ. Antoine et Pierette Zamberty, Mr. Joseph et Mme Juliette Coquand, Mr. Jean et Mme Louise Domange, իրենց խորին շնորհակալութիւնը կը յայտնեն, ամէն անոնց, որոնք մասնակցեցան, Տիկին ՍՈՒՔԱՆ ԳԷՈՐԳԵԱՆԻ յուղարկաւորութեան:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Փրինկեանցի Հայկէկ Սինանեան որ կը գտնուի Փարիզի շրջակայ գիւղերը: Իմացնել՝ իր հօրեղբօրորդիին Հայկազ Սինանեանի, 51 rue St. Bazil. Marseille.



Կ'ուզուին մեքենայով à façon թրիքօ շինող գործաւորներ (թիւ 7-8—10): Լաւ վճարում: Դիմել Թերզեան Թրիքօի գործարանը. 20 Rue Mélingue, մէթրօ՝ Buttes Chaumont.

## ԳՐԱՍԵՆԵԱԿ ՓՆՏՌՈՂՆԵՐՈՒՆ

Շատ յարմար եւ արդիական գրասենեակ մը կայ տրամադրելի, ընկերովի վարձելու համար, նպաստաւոր պայմաններով: փափաքողները դիմեն 57 rue des Arehives, Paris. 3րդ յարկ թիւ 28 սենեակը, ժամը 4.30էն 5.30:



## ՍԻՄԻԹՆԵՐ

Անուան արժանի է միմիայն այն սիմիթը որ պատրաստուած է A. LA GARDE, 1 Rue St. Lazare, PARIS (9e) Nord Sud: N. D. de Lorette. Téléphone Trudaine 95-21

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H. STEPHAN





Բանակցութիւնները, եթէ համաձայնութեան յանգին, Մահմուտ փաշա պիտի մեկնի Լոնտոն, անգլ. կառավարութեան ներկայացնելու համար անգլեւեգիպտական դաշնագրի մը կնքման նպատակով նոր առաջարկներ: Այդ պարագային, Սրտքը փաշա արդի վարչապետը միակ խոչընդոտը պիտի հանդիսանայ այդ բանակցութեանց եւ այդ պատճառով ալ պարտաւոր պիտի ըլլայ հրաժարական տալու: Ատկից վերջ, Մահմուտ փաշա պիտի կրնայ Վաֆտի հետ համերաշխական դահլիճ մը կազմել:

Լուրը կը հաղորդուի վերապահութեամբ:

## Անգլեւհնդիկ Խորհրդաժողովը

Անգլեւհնդկական Խորհրդաժողովը Լոնտոնի մէջ բացուեցաւ առջի օր, Բացման առթիւ արտասանուած ճառերը կը հաստատեն թէ հնդիկ պատգամաւորներէն շատերը, ճիշտ իրենց այն ազգակիցներուն պէս որոնք դէմ են Խորհրդաժողովին, կ'ուզեն ձեռք բերել իրական դրութիւն մը, որ Հնդկաստանը դնէ Բրիտանական կայսրութեան բաղկացուցիչ երկիրներուն հետ նոյն հաւասարութեան վրայ:

⁂ Հակառակ Խորհրդաժողովին բացման, խռովութիւնները կը շարունակուին Հնդկաստանի կարգ մը կեդրոններուն մէջ: Քարաշիի մէջ, Անգլիացիներ որոնք ինքնաշարժով կը վերադառնային, յարձակման ենթարկուեցան ազգայնական Հնդիկներու կողմէ: Ինքնաշարժին վարիչը եւ անգլուհի մը ծանրօրէն վիրաւորուեցան:

Հնդիկ ազգային խորհուրդի վարիչներէն ժավահալալ Նէհրու երկու տարի բանտարկութեան դատապարտուած էր: Այս առթիւ Սուգի օր յայտարարուեցաւ, նոր ու բուռն խռովքի մատնելով երկիրը: Պոմպէյի մէջ 4 ամբոխավարներ ձերբակալուեցան: Նիւ Տէլհիի մէջ ձերբակալուածներու թիւը կը հասնի 218ի, Սուրաթի մէջ 50ի: Ասկից զատ, Սուրաթի մէջ, ցոյցի մը ընթացքին, վիրաւորուեցան 50ի չափ անձեր:



### ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ
## ԱՒԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆԻ
### ՔԱՌԱՍՆԱՄԵԱՅ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, 146—148 Avennue des Chartreux, Brebant Marsseillaisի շքեղ սրահին մէջ:

Հովանաւորութեամբ՝ Տ. Գր. ԵՊԻՍԿ. ՊԱԼԱՔԵԱՆԻ

Նախագահութեամբ՝ Պ. Տ. ՄԻՐԶԱՅԵԱՆՑԻ

Կը խօսին՝ Պ. Պ. ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆ

Փրոֆ. Գ. ԽԱՅԻԿԵԱՆ

եւ Պ. Հ. ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Վասպուրականի Հայր. Միութեան կողմէ, Նոյեմբեր 30 կիրակի օր:

Կը խնդրուի նկատի ունենալ այդ թուականը:

### ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շավիլի Նալլուխանցի Երիտ. Միութեան կողմէ ի նպաստ Գրադարանի ճոխացման, 29 նոյեմբեր Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ, Salle Harolaի մէջ, 3 Rue la Vieuville, մէթրօ՝ Abbesses եւ Picale.

Կը նախագահէ՝ Պ. Դ. ՏԷՐ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, նուագ, արտասանութիւն, մեներգ, հայկական պարեր:

Կը ներկայացուի ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐ

Կը նուագէ Լիւնա Փարքի օրքէսթրը: Մուտք՝ կանանց 7.50 ֆրանք, այրերու 10 ֆր.: Տոմսերը կը ծախուին Պէլվիլի մէջ նպարավաճառ՝ Արթինեանի մօտ:

### ԹԱՏԵՐԱ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Սեբաստիոյ Գօչհիսարի Հայր. Միութեան կողմէ: 25 Դեկտ. Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Փըթի Ժուռնալի սրահին մէջ, 21 rue Cadet. Métro Cadet.

Կը ներկայացուի՝ ՍԵՒ ՀՈՂԵՐ



### Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ Աղբիւր-Սերոբ խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին, այս շաբաթ իրիկուն ժամը 9ին սովորական հաւաքատեղին: Պարտաւորիչ ներկայութիւն: կարեւոր օրակարգ:

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ժողովը այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանը: Կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը կարեւոր է:

ԼԻՈՆԻ Քեռի եւ Կուկունեան խումբերու ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը: Կարեւոր օրակարգ:

ԼԻՈՆԻ Համազասպ խումբի ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանին սրահին մէջ: Խիստ կարեւոր օրակարգ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԼԻՈՆԻ Պատանեկան միութեան, վիճաբանական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին Գրադարանի սրահը, 262 րիւ Տիւքէքլէն: Նիւթ՝ «համաշխարհային պատերազմը եւ հայ ժողովուրդը»: Կը հրաւիրուին ընկերներ եւ համակիրներ:

### ՅՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը այս Հինգշաբթի երեկոյ ժամը 9ին Ֆլորիայի մէջ: Կը խօսի Պ. Եր. Տ. Անդրէասեան. Հայ լեզուին տիրական յատկութիւններուն մասին: Մէկ ժամ






սինէմա, Վիքթոր Հիւկոյի «Թշուառներ»ը եւ Չարլի Չէփլին:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Տէր եւ Տիկին Ն. Նարլեան շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց, որոնք անձամբ, նամակով եւ կամ հեռագրով իրենց շնորհաւորութիւնները յայտնեցին իրենց ամուսնութեան առթիւ:

Ժուանվիլ, 17 Հոկտ. 930

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Փինկեանցի Հայկիկ Սինանեան որ կը գտնուի Փարիզի շրջակայ գիւղերը: Իմացնել՝ իր հօրեղբօրորդիին Հայկազ Սինանեանի, 51 rue St. Bazil. Marseille.

### ԳՐԱՍԵՆԵԱԿ ՓՆՏՌՈՂՆԵՐՈՒՆ

Շատ յարմար եւ արդիական գրասենեակ մը կայ տրամադրելի, ընկերովի վարձելու համար, նպաստաւոր պայմաններով: փափաքողները դիմեն 57 rue des Arehives, Paris. 3րդ յարկ թիւ 28 սենեակը, ժամը 4.30էն 5.30:

EMPIRE Միւզիք-Հօլ՝ 37 Av. Wagram








ԳԻՆ՝ 30 ՖՐԱՆՔ




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

հանրաքուէի դիմում կատարուի, այն տեսակ պայմաններով սակայն, որ վրացի ժողովուրդը կարենայ ազատօրէն արտայայտել իր կամքը՝ քաղաքական այն վարչաձեւին մասին, որ ասկից վերջ իրը պէտք է ըլլայ»։

Լիտվինոֆ որոշած է չպատասխանել այդ կոչին։

## Հնդկաստանի մէջ դատապարտութիւններ

Յեղափոխական դաւադրութեամբ, սպանութեամբ եւ գողութեամբ, ոստիկաններու վրայ յարձակման յանցանքներով ամբաստանուած 180 անձերու դատավարութիւնը տեղի ունեցաւ Հայտուօնկի մէջ, ոճրադատ յանձնախումբին առջեւ։ Վեց հոգի մահուան դատապարտուեցան, 29 հոգի ցմահ տաժանակիր աշխատանքի, 27 հոգի բանտարկութեան եւ 24 անձեր ալ աքսորի։ Մէկ քանի փոքր պատիժներ ալ տրուեցան։ 58 հոգի անպարտ արձակուեցան։

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԻԹԱԼԻԻ Աղբիւր-Սերոբ խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին, վաղը Շաբաթ իրիկուն ժամը 9ին սովորական հաւաքատեղին։ Պարտաւորիչ ներկայութիւն։ կարեւոր օրակարգ։

ՔՐԻՍՏԱՓՈՐ խումբի ժողովը վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Ֆլորիա ճաշարանը։ Ներկայանալ անդամատետրով։

ԱՆԻԷՐ Պուա Քոլոմպի կոմիտէն ստիպողաբար վիճաբանական ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները եւ համակիրները այս Կիրակի ժամը 2.30ին 153 Ave. Argenteuil, salle Comèteի մէջ։ Բացակաները նկատի պիտի առնուին։

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. միութեան ընդհ. ժողովը՝ այս կիրակի սովորական հաւաքատեղին։ կարեւոր օրակարգ։

ԼԻՈՆԻ ընկերներու երկրորդ ընդհ. վիճաբանական ժողովը այս կիրակի առաւօտ ժամը 9ին Գ. Թաղապետարանի ընթերցասրահին մէջ։

Ս. Էթիէնի ենթակոմիտէի ընկերները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8ին, սովորական հաւաքատեղին։ Ներկայանալ անդամատետրով։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԼԻՈՆԻ Բարձր Հայքի Հայր. միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 2,30ին, 4 Թիւ Ֆրանսուա Կարսէն, Բարձր Հայքի ճաշարանը։ Կարեւոր օրակարգ։

ՊԻՅԵԱՆՔՈՒՐԻ Զ. Ե. Ռ. Միութեան ժողովը այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը։ կարեւոր օրակարգ։

### ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Լիոնի Շրջ. կոմիտէն իր ցաւակցութիւնները կը յայտնէ ընկ. մելիք Գէորգեանի, իր կնոջ ՍԻՒԶԱՆ ԳԷՈՐԳԵԱՆԻ մահուան առթիւ։

### ՀԱՆԴԷՍ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Լիոնի Նալլուխանի Հայր. միութեան նուիրաբաշխութեան հանդէսը այս կիրակի ժամը 2ին Գ. Թաղապետարանի սրահը։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Փինկեանցի Հայկիկ Սինանեան որ կը գտնուի Փարիզի շրջակայ գիւղերը։ Իմացնել՝ իր հօրեղբօրորդիին Հայկազ Սինանեանի, 51 rue St. Bazil. Marseille.

— Կէլիպօլուցի (Տարտանէլ) Տիրուհի Թորոսեան, ծնեալ Պտուղեան, կը փնտռէ իր զաւակները՝ Հաճի Թորոս այժմ 24 տարեկան, թեւերուն վրայ հաճիի նշաններ ունի, Մարի 22 տարեկան, թուխ, աչքերը և մազերը՝ շագանակագոյն են և վզին վրայ վէրքի նշան կայ։ Արմենուհի 20 տարեկան, սպիտակամորթ, աչքերը եւ մազերը շագանակագոյն են։ Տեղեկութեան միջոցին կորսուած են Մուրատ Չայի եզերքը։ Իմացնել գրատուն Պալենց, 233 Fbg. St. Martin, Paris.

### ՀԱՆԴԷՍ ԱԼՖՈՐՎԻԼԻ ՄԷՋ

Հ. Մ. Ը. Մ.ի Ալֆորվիլի մասնաճիւղի տարեկան հանդէսը 7 Դեկտ. կիրակի օր ժամը 2.30ին Մէրիի սրահին մէջ։ Մուտք՝ 5 ֆր.։

### ԳՐԱՍԵՆԵԱԿ ՓՆՏՌՈՂՆԵՐՈՒՆ

Շատ յարմար եւ արդիական գրասենեակ մը կայ տրամադրելի, ընկերովի վարձելու համար, նպաստաւոր պայմաններով։ փափաքողները դիմեն 57 rue des Archives, Paris. Յրդ յարկ Թիւ 28 սենեակը, ժամը 4.30էն 5.30։



## ՅՈԲԵԼԻՆԱԿԱՆ ՀԱՆԴԷՍ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ
## ԱՒԵՏԻՍ ԱՀԱՐՈՆԵԱՆԻ
### ՔԱՌԱՍՆԱՄԵԱՅ ԳՐԱԿԱՆ ԳՈՐԾՈՒՆԷՈՒԹԵԱՆ

վաղը Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, 146—148 Avenue des Chartreux, Brebant Marseillaisի շքեղ սրահին մէջ։

Հովանաւորութեամբ՝ Տ. Գր. ԵՊԻՍԿ. ՊԱԼԱՔԵԱՆԻ

Նախագահութեամբ՝ Պ. Տ. ՄԻՐԶԱՅԵԱՆՑԻ

կը խօսին՝ Պ. Պ. ՄԻՔԱՅԷԼ ՎԱՐԱՆԴԵԱՆ

Փրոֆ. Գ. ԽԱՅԻԿԵԱՆ եւ Պ. Հ. ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ

կ'երգեն՝ Օրիորդ Հ. ԹՈՐՈՍԵԱՆ (Փարիզէն), Տիկ. ԼՈՐԻՏՏԱ ՄԱՐՈՒԹԵԱՆ (Մարսէյլի պետ. երաժշտանոցէն), Օր. ՌԱՍՏՈՒԼ (պետ. երաժշտանոցէն)։

կը նուագէ՝ Օր. ՍԻՒԶԱՆ ԱՌՆՕ (պետ. երաժշտ. ուսուցչուհի)

կ'արտասանեն՝ Օր. ԱՆԴՐԷ ՌՈՒՍԷ (պետ. երաժշտանոցէն), Պ. Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆ, Պ. և Յ. ՈՒԶՈՒՆԵԱՆ։

կը մասնակցի «ՔՆԱՐ» նուագախումբը։

ՄՈՒՏՔ՝ 5 ՖՐԱՆՔ

## Զ. Ե. Ռ. ՄԻՈՒԹԵԱՆ ՀՆԳԱՄԵԱԿԸ

ՓԱՐԻԶ, 13 ԴԵԿՏԵՄԲԵՐ ՇԱԲԱԹ ԻՐԻԿՈՒՆ

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ՝ Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԵՒ Հ. Մ. Ը. Մ.Ի

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆՈՎ

ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ ԵՒ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ

Մանրամասնութիւնները յաջորդաբար

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՌՈՄԱՆԻ ՄԷՋ

Հ. Յ. Դ. Ռոմանի «Անդրանիկ» ենթակոմիտէին կողմէ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8ին պետական Թատրոնին կից «A l'Erden» սրահին մէջ, Place Jules Nadi. Գին՝ 5 եւ 3 ֆրանք։

կը ներկայացուի՝ «ՍԱՍՈՒՆԻ ԴԻՒՑԱԶՆԵՐԳՈՒԹԻՒՆԸ»

### ԹԱՏԵՐԱ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Սեբաստիոյ Գոչհիսարի Հայր. Միութեան կողմէ։ 25 Դեկտ. Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Փըթի Ժուռնալի սրահին մէջ, 21 rue Cadet. Métro Cadet.

կը ներկայացուի՝ ՍԵՒ ՀՈՂԵՐ

### ԳՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

26 Նոյեմբեր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին։ Նիւթ՝ «Մշոյ Գեղամի Ազգագրական եւ Պատմագիտական գործերը»։

կը խօսի՝ Կ. ՍԱՍՈՒՆԻ

## ՄԵԾ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԱԾ

Հ.Բ.Ը.Մ.Ի ԵՒ Հ.Մ.Ը.Մ.Ի ԱՆԿԻԷՆԻ Մ-ՃԻՒՂԵՐՈՒՆ ԿՈՂՄԷ

տեղի կ'ունենայ նոյեմբեր 29 շաբաթ գիշեր ժամը ճիշտ 9.30ին, Անկիէնի Salle des Fêtesին մէջ, 30, Rue de Casino

ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ

որուն կը մասնակցին M. Worms, des Grands Concerts Symphoniques (violoncelle), Mme Leickmann-Cacheux, 1er prix du Conservatoire (violon), Mlle Cacheux, 1er prix du Conservatoire (piano) Mlle Suire (harpe), ինչպէս նաեւ ՊՊ. Գմբէթեան, Խաչերեանեղբայրներ, Գրիգորեան եւլն.։ Սկաուտական խաղեր։

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ ԽԻՍՏ ԾԻԾԱՂԱՇԱՐԺ ՋԱՒԵՇՏ ՄԸ

ԱՆԱԿՆԿԱԼՆԵՐ — ՃՈԽ ՊՈՒՖԷ — ՄԵԾ ԳՕԹԻՅԵՕՆ

գին՝ Réservé 25 ֆր., մտից տոմս՝ 15 ֆրանք։

Տոմսերը կարելի է ստանալ «Կավռօշ»էն եւ Գարլօ ճաշարանէն՝ 34, Rue St. Lazare

## «ՇԱՆԹ» ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

# ԼԵՌՆԵՐ ԵՒ ԾՈՎԵՐ

### ՏԱՐԵԳՐՔԻ Ա. ՏԱՐԻՆ 1931

Մեծադիր, պատկերազարդ եւ ճոխ բովանդակութեամբ

Վարչութիւն՝ Վ. Ռ. ԹԱԳԻՈՐԵԱՆ

Խմբագրութիւն՝ Մ. եւ Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ

Տարեգրքին իրենց մասնակցութիւնը բերած են ժամանակակից ծանօթ գրագէտներ։

Գինը՝ Ֆրանսա, Սուրիա, Պալքաններ եւ Թուրքիա 40 ֆրանք. Ամերիկա, Անգլիա, Եգիպտոս եւ Պարսկաստան 2 տոլար։

Ապսպրանքները բացարձակապէս կանխիկ։

Դիմել ընդհանուր հասցէին, «Chanth», Arts et Lettres, 94 rue Lafayette, Paris (10e). կամ L. Kévonianի, 235 Fbg. St. Martin, Paris (10e).



EMPIRE Միւզիք-Հոլ՝ 37 Av. Wagram


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

ներէ, որոնք երբեք չեն ուզեր բոլշեւիկեան իշխանութիւնը տապալել, ո՛չ ալ համայնավար կուսակցութիւնը: Անոնք շատ լաւ գիտեն թէ կուսակցութեան մէջ պառակտում մը չափազանց վտանգաւոր հետեւանքներ պիտի ունենար: Խնդիրը կը դառնայ բոլշեւիզմի ղեկավարութեան շուրջ:

Այդ ղեկավարութիւնն ստանձնելու համար, պէտք է մէկը որ Ստալինի պէս երկաթէ կամքով մը օժտուած ըլլայ: Ընդդիմադիրները չեն կրնար առաջ քշել մէկը որ ընդունակ ըլլայ ստանձնելու ղեկավարութիւնը: Ռիկով խելացի է, բայց չունի անհրաժեշտ կորովը: Պուխարին համոզուած յեղափոխական է, բայց չափազանց վիպային է, գալով Տոմսկիի, տաղանդաւոր կազմակերպիչ մըն է, բայց հիւանդ»:

.·. Երէկ իրիկուն Մոսկուայի մէջ հազարաւոր բանուորներ եւ բանուորուհիներ, գործարաններու փակումէն վերջ մասնակցեցան մեծ ցոյցի մը որ կազմակերպուած էր սէնտիքաներուն կողմէ, բողոքելու համար Ռուսիոյ գործերուն մէջ օտար պետութեանց միջամտութեան դէմ:

Այս ցոյցը կազմակերպուած է նկատի ունենալով ռուս ճարտարագէտներու եւ ուսուցչապետներու դէմ դատավարութիւնը, որ տեղի կ'ունենայ արտասահմանի հետ դաւադրական յարաբերութեան եւ լրտեսութեան մեղադրանքով:

## Գաղտնի դաշնագիր

### ԱՆԳԼԻՈՅ ԵՒ ԱՐԱԲ ՄԵԾ ՄԻՒՖԹԻԻՆ ՄԻՋԵՒ

Պաղեստինի հեռագրական գործակալութիւնը կը հաղորդէ լուր մը որուն համաձայն գաղտնի դաշնագիր մը ստորագրուած է Մեծն Բրիտանիոյ գաղթային նախարարութեան եւ Երուսաղէմի Մեծ Միւֆթիին միջեւ: Այս դաշնագիրը, որ առաջին անգամ ըլլալով կը հրատարակուի Պոմպէյի հնդիկ ազգ. կոմիտէին կողմէ, մեծ յուզում յառաջ բերած է ամէն կողմ:

Այս դաշինքին համաձայն, Անգլիա Արաբներուն կը խոստանայ դադրեցնել հրեայ ներգաղթը Պաղեստինի մէջ եւ արգիլել արաբական հողերու գնումը Հրեաներու կողմէ: Ասոր փոխարէն Մեծ Միւֆթին եւ արաբ երեւելիները յանձն կ'առնեն ազդեցութիւն բանեցնել Հնդկաստանի Իսլամներուն վրայ ի նպաստ Անգլիոյ:

Հնդիկ ազգ. խորհուրդը, այս յայտարարութիւնները ընելով հանդերձ: որոշում մը տուած է որով կը յայտնէ թէ կուսակից է հրեայ օճախի մը հաստատման Պաղեստինի մէջ:

### ՊԷԼՎԻԼԻ ԹԱՂԱՄԱՍԻՆ ՀԱՅ ԾՆՈՂԱՑ

Հայկ. բարեգործական ընդհ. միութեան փարիզի մասնաժողովը կը ծանուցանէ թէ, վաղը Հինգշաբթիէն սկսեալ, Պէլվիլի շրջանակին հայ լեզուի եւ ազգ. պատմութեան դասընթացքները տեղի պիտի ունենան 40 Rue Belleville, M. Georgesի սրահը, ամէն Հինգշաբթի առաւօտ, ժամը 9էն մինչեւ 11:

Նոյն շրջանակի բոլոր հայ ծնողներէն կը խնդրուի այս շաբաթական դասընթացքներուն ղրկել կանոնաւորաբար իրենց 6էն 14 տարեկան զաւակները:

(Կնիք)



### ԳՐԱԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԴԱՍԱԽՕՍՈՒԹԻՒՆ

Այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին: Նիւթ՝ «Մշոյ Գեղամի Ազգագրական եւ Պատմագիտական գործերը»:

Կը խօսի՝ Կ. ՍԱՍՈՒՆԻ

### ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ ՄԷՋ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին Պուա-Քոլոնպի Թաղապետական սրահին մէջ Rue des Halles. Ա. անգամ ըլլալով կը ներկայացուի՝ Շիրվանզատէի

ՆԱՄՈՒՍԸ (ՏՐԱՄ 5 ԱՐԱՐ)

Կը մասնակցին Տիկիններ Ատրինէ Տէրուան, Բնարիկ, Գայեանէ, Պ. Պ. Գմբէթեան, Ա. Սարաֆեան, Ս. Մաքսուտեան, Գրիգոր Վահան, Զ. Ղարիպեան: Գիները՝ 15, 10 եւ 7.50:

ՕՐ. ԻՄԱՍՏՈՒՀԻ ԲԱԳՈՍԵԱՆ

ԵՒ

ԸՆԿ. ՅՈՎՀԱՆՆԷՍ ՋԸՐՊՃԵԱՆ

ՆՇԱՆՈՒԱԾ

23 Նոյ. 1930 Փարիզ

### Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՓԱՐԻԶԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Հրազդան խումբի ընկերները վաղը հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին: Ընկերներու ներկայութիւնը պարտաւոր է:

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ ենթակոմիտէի ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 131 Fbg. du Temple.

ԱՆԻԷՌ Պուա Քոլոնպի փոթորիկ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին Ave. Argenteuil, սովորական հաւաքատեղին:

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին Դրագարանի սրահը: Խիստ կարեւոր օրակարգ:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՊԱՆԵԼՕ-Բաշան Հարաւային-Արեւմտեան «Յառաջդիմասէր» Միութեան երեկոյթ-պարահանդէսը Դեկտ. 20ին, Շաբաթ իրիկուն: Կը խնդրուի նկատի ունենալ սոյն թուականը:

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի դասախօսական ժողովը վաղը Եշ. իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ: Կը խօսի Բաբգէն Բէշիշեան,«Մենք մեզ ճանչնանք» Մէկ ժամ սինէմա, Վիքթօր Հիւկոյի Թշուառները եւ Չարլի Չէփլին:

Զ. Ե. Ո. Միութեան փարիզի Հնգամեակի յանձնախումբը ժողովի կը հրաւիրուի այս Ուրբաթ իրիկուն ժամը 9ին 206 Rue Lafayette փոքրիկ սրճարանը (Յառաջի դէմ):

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկեր եւ ընկերուհիները այս Ուրբաթ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Վիրոֆլէյ, Մ. Մ.— 35:
Մարսէյլ, Յ. Գ.— 35:
Փարիզ, Զ. Յ.— 35:
Ալֆորվիլ, Յ. Գ.— 25:
Մարսէյլ, Ա.Լ.— 150:
Փարիզ, Մ. Զ.— 50:
Պարոքման, Վ. Մ.— 35:
Հէրօ, Ա. Մ.— 35:
Փարիզ, Մ. Պ.— 70:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Մարաշի Գույթուլ Թաղէն Մուխթար Սէֆէրեան Յակոբի որդի Երուանդ Սէֆէրեան, որ ժամանակ մը Ֆրանսա, Պելճիքա եւ Եգիպտոս մնալէ վերջ, կը կարծուի թէ կրկին Ֆրանսա եկած է: Մօտ երեք տարիէ իվեր իր մասին լուր չկայ: Գրել իր եղբօր՝ Յովհաննէս Սէֆէրեանի, B. P. No. 567, Beyrouth, Grand Liban.

— Կէլիպօլուցի (Տարտանէլ) Տիրուհի Թորոսեան, ծնեալ Պոտուղեան, կը փնտռէ իր զաւակները՝ Հաճի Թորոս այժմ 24 տարեկան, թեւերուն վրայ հաճիի նշաններ ունի, Մարի 22 տարեկան, թուխ, աչքերը













IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN




















## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ ՄԷՋ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին Պուա-Քոլոմպի Թաղապետական սրահին մէջ Rue des Halles. Ա. անգամ ըլլալով կը ներկայացուի՝ Շիրվանզատէի

## ՆԱՄՈՒՍԸ (ՏՐԱՄ 5 ԱՐԱՐ)

Կը մասնակցին Տիկիններ Ատրինէ Տէրուան, Քնարիկ, Գայեանէ, Պ. Պ. Գմբէթեան, Ա. Սարաֆեան, Ս. Մաքսուտեան, Գրիգոր Վահան, Զ. Ղարիպեան։ Գիները՝ 15, 10 եւ 7.50։

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

Շավիլի Նալլուխանցի Երիտ. Միութեան կողմէ ի նպաստ Գրադարանի ճոխացման, 29 Նոյեմբեր Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ, Salle Harolaի մէջ, 3 Rue la Vieuville, մէթրօ՝ Abbesses եւ Picale.

Կը նախագահէ՝ Պ. Դ. ՏԷՐ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, նուագ, արտասանութիւն, մեներգ, հայկական պարեր։

Կը ներկայացուի ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐ

Կը նուագէ Լիւնա Փարքի օրքեսթրը։ Մուտք՝ կանանց 7.50 ֆրանք, այրերու 10 ֆր.։ Տոմսերը կը ծախուին Պէլվիլի մէջ Նպարավաճառ Արթինեանի եւ Պիյեանքուր՝ Նաւավարեանի ճաշարանը։

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՓԱՐԻԶԻ կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Հրազդան խումբի ընկերները վաղը հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին։ Ընկերներու ներկայութիւնը պարտադիր է։

ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 131 Fbg. du Temple.

ԱՆԻԷՌ Պուա քոլոմպի փոթորիկ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին Ave, Argenteuil, սովորական հաւաքատեղին։

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ընկեր Լեւոն Զորմխեանի բնակարանը։ Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացուցիչները։

ՓԱՐԻԶԻ Աղբիւր Սերոբ խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ստիպողաբար գտնուիլ Ֆ.ին մօտ։

ԱՆԻԷՌ-Պուա Քոլոմպի Եռագոյն խումբի ընդհ. ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8,30ին 79 Rue des Chambards. Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՊԻՅԵԱՆՔՈՒՐԻ Ջաւարեան կոմիտէն բոլոր ընկերները ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ այս կիրակի առաւօտ ժամը 9ու կէսին 186 Ave. Verdun, Իսի-լէ-Մուլինօ։

ՔՐԻՍՏԱՓՈՐ ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։

ՍԱՐՍԷԼԻ Հրայր խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին այս Շաբաթ իրիկուն ժամը 8ու կէսին ընկեր Ճուհանեանի բնակարանը։

ԱՌՆՈՒՎԻԼ ԼԷ-ԿՈՆԷՍԻ Ռազմիկ խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին այս շաբաթ իրիկուն ժամը 8ուկէսին ընկեր Ճուհանեանի բնակարանը։

ԳԱՒԱՌ

ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻԻ ընկերական ժողովը այս Կիրակի ժամը 2.30ին սովորական հաւաքատեղին։ Ներկայ կ'ըլլայ ընկ. Յ. Տէօքմէճեան։

ՌՈԱՆի ընկերական ժողովը այս Կիրակի ժամը 2.30ին սովորական հաւաքատեղին։ Ներկայ կ'ըլլայ ընկ. Վ. Սէֆէրեան։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՊԱՆԵԼՕ-Բաշան Հարաւային-Արեւմտեան «Յառաջդիմասէր» Միութեան երեկոյթ-պարահանդէսը Դեկտ. 20ին, Շաբաթ իրիկուն։ Կը խնդրուի նկատի ունենալ սոյն թուականը,

ՍԻՓԱՆ երգչախումբի փորձերը վաղը իրիկուն ժամը 8ու կէսին, 71 Ave Kléber.

Զ. Ե. Ռ. Միութեան Փարիզի դասախօսական ժողովը այս իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Բաբգէն Քէշիշեան, «մենք մեզ ճանչնանք։» Մէկ ժամ սինէմա, Վիքթոր Հիւկոյի Թշուառները եւ Չարլի Չէփլին։

Զ. Ե. Ռ. Միութեան փարիզի Հնգամեակի յանձնախումբը ժողովի կը հրաւիրուի վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 9ին 206 Rue Lafayette փոքրիկ սրճարանը (Յառաջի դէմ)։

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկեր եւ ընկերուհիները վաղը Ուրբաթ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԱՏԱՓԱԶԱՐԻ Հայր. Միութեան անդամական ժողովը, այս Կիրակի ժամը 2.30ին 40 Rue de Belleville սրճարանին վերնայարկը։ Կը հրաւիրուին արձանագրուած եւ ոչ արձանագրըրուած բոլոր հայրենակիցները։ Օրակարգ տարեկան հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն։

Հ. Մ. Ը. Մ.ի Տէսինի մասնաճիւղի անդամական ընդհ. ժողովը վաղը ուրբաթ իրիկուն ժամը 7ին Սօսիէթէ Լիոնէզի ճաշարանը։ Կը հրաւիրուին անդամ եւ ոչ անդամ հայրենակիցները եւ 15 տարեկանէն վեր սկաուտները։

Օրակարգ.— Պատգամաւորական ժողովի հարց, նոր վարչութեան ընտրութիւն եւ հաշուետուութիւն,

ԵՈԶ. եւ ՀԸՋ. ընդհ. Հայր. Միութեան Փարիզի Վարչութիւնը ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ, Փարիզի, Անիէրի եւ Իսի-լէ-Մուլինոյի մասնաճիւղերը։ Օրակարգ, շըրջաններէ եկած նամակներու ընթերցում, Փարիզի վարչութեան ընտրութիւն, եւ ներքին խնդիրներ։ Նկատի ունենալով այս ժողովին խիստ կարեւորութիւնը ներկաներու թիւը օրինաւոր պիտի նկատուի։ Ժողովը տեղի կ'ունենայ այս կիրակի ժամը 2.30ին 131 Faub. du Temple Metro Belville։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Էֆրոսինի Հաճի Սթէֆանու, Տէր եւ Տիկին Թէմիսթոքլը Պալտէրանիս եւ պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն ամէն անոնց որոնք իրերց ցաւակցութիւնները յայտնեցին՝

ՍԹԷՖԱՆՈՍ ՀԱՃԻ ՍԹԷՖԱՆՈՒԻ

գանադղէտ մահուան առթիւ։

Լիոն 23 Նոյեմբեր 1930

## ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐԸ ԼԻՈՆԻ ՄԷՋ

Կազմակերպուած՝ Զ. Ե. Ռ. Միութեան Լիոնի մասնաճիւղին կողմէ, 6 Դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 8ին Գ. Թաղապետարանի սրահին մէջ։ Կը խօսի Պ. Վարդան Զուլէքեան։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։

Կը խնդրուի բոլոր կազմակերպութիւններէն նկատի ունենալ այդ օրը։

## ՅԱԽԱԼԻ ԱՆՅԱՅՏԱՑՈՒՄ

Երուանդ Պօղոսեան 16 տարեկան որ կը բնակէր իր ծնողքին մօտ Մոնմորանսի, ամսոյս 17ին գործի համար իջած է Փարիզ եւ չէ վերադարձած։ Ծնողքը փնտռտուքը կը շարունակեն պատկանեալ պաշտօնատունն եւ ծանօթներու շրջանակին մէջ։ Լուր ունեցողներէն կը խնդրուի հաղորդել Ս. Պօղոսեան, 14 Rue du Temple, Montmorency, (S. et. O.).

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Մարաշի Գույթուլ Թաղէն Մուխթար Սէֆէրեան Յակոբի որդի Երուանդ Սէֆէրեան, որ ժամանակ մը Ֆրանսա, Պելճիքա եւ Եգիպտոս մնալէ վերջ կը կարծուի թէ կրկին Ֆրանսա եկած է։ Մօտ երեք տարիէ ի վեր իր մասին լուր չկայ։ Գրել իր եղբօր՝ Յովհաննէս Սէֆէրեանի, B. P. No. 567, Beyrouth, Grand Liban.

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Նիս, Վ. Մ.— 140։
Մարսէյլ, Ռ. Ս.— 210։
Մարսէյլ, Մ. Պ.— 140։
Մարսէյլ, Յ. Գ.— 35։
Թուր, Պ. Թ.— 35։








IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H STEPHAN

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի Շապին Գարահիսարցի տիկին Պայծառ Քէօրիւքճեան (ծնեալ Սամուէլեան) որ մօտ ամիս առաջ Պորտօէն եկած է Փարիզ իր փոքրիկ աղջկան Մարգրիտի հետ։ Շապին Գարահիսարի Հայր. Միութենէն եւ հայրենակիցներէ կը խնդրուի իմացնել իր ամուսնոյն Keurukdjian Haroutiounի, 9 Rue du Pas St. Georges, Bordeaux, Gironde.

Լուր տուողին 100 ֆր. նուէր։ Տիկին Պայծառէ կը խնդրուի ներկայանալ «Յառաջ»ի խմբագրատունը։















## Հ. Յ. Դ. ԵՒՐ. Կ. ԿՈՄԻՏԷՆ ՍՏԻՊՈՂԱԲԱՐ ԸՆԴՀ. ԺՈՂՈՎԻ

կը հրաւիրէ Տէսինի բոլոր ընկերները վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին Քաֆէ տը լա Փէյի մէջ։ Պարտաւորիչ ներկայութիւն։

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ՊՈՒԱ ԲՈԼՈՆՊԻ ՄԷՋ

*Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.45ին Պուա-Քոլոնպի Թաղապետական սրահին մէջ* Rue des Halles. *Ա. անգամ ըլլալով կը ներկայացուի՝ Շիրվանզատէի*

## ՆԱՄՈՒՍԸ (ՏՐԱՄ 5 ԱՐԱՐ)

*Կը մասնակցին Տիկիններ Ատրինէ Տէրուան, Քնարիկ, Գայեանէ, Պ. Պ. Ա. Սարաֆեան, Ս. Մաքսուտեան, Գրիգոր Վահան, Զ. Ղարիպեան։ Գիները՝ 15, 10 եւ 7.50։*

## ԵՐԵԿՈՅԹ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Շավիլի Նալլուխանցի Երիտ. Միութեան կողմէ ի նպաստ Գրադարանի ճոխացման, այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ,* Salle Harola*ի մէջ,* 3 Rue la Vieuville, *մեթրօ՝* Abbesses *եւ* Picale.

*Կը նախագահէ՝ Պ. Դ. ՏԷՐ ԳԱԼՈՒՍՏԵԱՆ*

*Գեղարուեստական ճոխ բաժին, երգ, նուագ, արտասանութիւն, մեներգ, հայկական պարեր։*

*Կը ներկայացուի ԵՐԿՈՒ ԽՈՒԼԵՐ*

*Կը նուագէ Լիւնա Փարքի օրքէսթրը։ Մուտք՝ կանանց 7.50 ֆրանք, այրերու 10 ֆր.։*



## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

*ԱԼՖՕՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները, այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ընկեր Լեւոն Զորմիսեանի բնակարանը։ Ներկայ կ'ըլլան Կ. Կ.ի ներկայացուցիչները։*

*ՓԱՐԻԶԻ Աղբիւր Սերոբ խումբի ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ստիպողաբար գտնուիլ Ֆ.ին մօտ։*

*ՊԻՅԵԱՆՔՈՒՐԻ Զաւարեան կոմիտէն բոլոր ընկերները ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ վաղը առաւօտ ժամը 9ու կէսին 186* Ave. Verdun, *Իսի լէ-Մուլինօ։*

*ՍԱՐՍԷԼԻ Հրայր խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8ու կէսին ընկեր Ճուհանեանի բնակարանը։*

*ԱՌՆՈՒՎԻԼ ԼԷ-ԿՈՆԷՍԻ Ռաղմիկ խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին այսօր շաբաթ իրիկուն ժամը 8ուկէսին ընկեր Ճուհանեանի բնակարանը։*

*ԳԱՒԱՌ*

*ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻԻ ընկերական ժողովը վաղը կիրակի ժամը 2.30ին սովորական հաւաքատեղին։ Ներկայ կ'ըլլայ ընկ. Յ. Տէօքմէճեան։*

*ՌՈԱՆԻ ընկերական ժողովը վաղը Կիրակի ժամը 2.30ին սովորական հաւաքատեղին։ Ներկայ կ'ըլլայ ընկ. Վ. Սէֆէրեան։*

*ՏԷՍԻՆԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը այս երկուշաբթի երեկոյ ժամը 8ին Քաֆէ տը լա Փէյի մէջ։*

*Կը հրաւիրուին բոլոր Դաշնակցական ընկերները։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Պատանեկան միութիւնը խիստ կարեւոր հարցի մը շուրջ ժողովի կը հրաւիրէ Պուլվառ Օտտօի եւ Սէն Լուի Պատանեկան միութիւնները վաղը Կիրակի ժամը 4ին, իր սովորական հաւաքատեղին։*

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*Ա. Ե. Հ. Կ. Խաչի Փարիզի Մանուկներու Պաշտ. մասնաճիւղի անդամներն ու անդամուհիները ստիպողաբար կը հրաւիրուին ընդհ. ժողովի վաղը կիրակի ժամը 3ին, 71* Ave. Kléber։ *Օրակարգ՝ զեկոյց Պատգամ. ժողովի, հաշուետուութիւն, Նոր վարչութեան ընտրութիւն, պարահանդէս եւ ընթացիկ հարցեր։*

*ԱՏԱՓԱԶԱՐԻ Հայր. Միութեան անդամական ժողովը, վաղը կիրակի ժամը 2.30ին 40* Rue de Belleville*ի սրճարանին վերնայարկը։ Կը հրաւիրուին արձանագրուած եւ ոչ արձանագրուած բոլոր հայրենակիցները։ Օրակարգ տարեկան հաշուետուութիւն եւ նոր վարչութեան ընտրութիւն։*

*ԵՈԶ. եւ ՇՐՋ. ընդհ. Հայր. Միութեան Փարիզի Վարչութիւնը ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ, Փարիզի, Անիէրի եւ Իսի լէ Մուլինոյի մասնաճիւղերը։ Վաղը կիրակի ժամը 2.30ին 131* Faub. du Temple, Metro Bellville։

*ՏԵՍԻՆԻ Սեբաստիոյ Ննդ. Ուսումնասիրաց միութիւնը ընդհանուր ժողովի կը հրաւիրէ արձանագրուած եւ ոչ արձանագրուած բոլոր հայրենակիցները վաղը Կիրակի առաւօտ ժամը 9.30ին Սոսիէթէ Լիոնէզի ճաշարանը։ Անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է։*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Մէօտոն, Ս. Պ.— 35։*
*Մարսէյլ, Ս. Ա.— 140։*
*Լիոն, Գործ.— 1,000։*
*Լիոն, Օր. Աճ. 100։*
*Մարսէյլ, Գործ.— 980*
*Մարսէյլ, Յ. Գ.— 100։*
*Մարսէյլ, Տօքթ. Բ.— 140։*
*Նիս, Տիկ. Մ.— 185։*
*Շէրպուրկ, Մ. Հ.— 35։*
*Փոնթէ Խ. Գ.— 35։*
*Մարսէյլ, Կ. Մ. 100։*
























IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10e)

Le Gérant H STEPHAN

